ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

## ՁՄԵՌԱՅԻՆ ՊԱՏԿԵՐ

Ձմեռը՝ ծեր մի նկարիչ,
Նկարել է... բայց ի՞նչ.
Ծխոտ փողոց,
Քամու վնգոց,
Նոթոտ գիշեր,
Մրսած շներ
Ու գիշերում մութից կախված
Կայծկլտացող խաղալիքներ...
Իսկ քաղաքը
Կուչ է եկել մի անկյունում,
Իսկ քաղաքը
Մոռացել է տաք շոր հագնել:
Ցուրտ է մի քիչ...

## ՁՄՌԱՆ ՀԵՔԻԱԹԸ

Փոքրիկ Նարեկ,
Լսո՞ւմ ես դու՝
Ոնց է ձյունը
Երգում դրսում.
— Ճը՛ք-ճը՛րք, ճը՛ք-ճը՛րք:
Ձնեմարդն է դաշտերն ավլում,
Ու ձյան հետ է հողմը պարում,
Իսկ հեքիաթում ձմեռային
Արջը որջում քուն է մտել
Ու երազում ծուռ թաթի տեղ
Մեղրամոմ է լիզում համեղ:
Գիշեր է ուշ,
Ահա գայլն է գալիս զգույշ.
Նապաստակին պիտի ճանկի,
Մոտենում է կամաց-կամաց՝
Երկու մոմեր մթնում պահած:
Նապաստակն էլ՝ ասես լինի ձնագնդի,
Վազ է տալիս թավալգլոր
Ու, պու՜կ, փախչում:
Իսկ գայլը գորշ,
Իսկ գայլը ծեր
Սովից, ցրտից
Շատ է հյուծվել...
Ու պառկում է ձյունե բարձին՝
Որ քիչ քնի,
Մի քիչ քնի:
Տեսնես վերջը ի՞նչ կլինի...

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## № 12 ● 1984

Լույս է տեսնում 1923 թվականից

Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Ձմեռային պատկեր
Ձմռան հեքիաթը . . 1
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ . . . 3
Հ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ
Հավաքածու՝ մողեսի պոչի . . . 4
Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Ավիամոդելիստի ձեռքից ամեն ինչ գալիս է . 6
Ե. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Սիրամարգը . . 7
Ա. ԱՎԱԳՅԱՆ
Բանաստեղծություններ . 8
Մ. ՇԱԼՏԻՏԵ
Խաղալիքը . . 9
Գ. ՄԿՐՏՉՅԱՆ
Ո՞վ է մեղավոր...
և ինչո՞ւ . . . 13
Գ. ԱԲԳԱՐՅԱՆ
Գլաձորի համալսարանը . 14
Խ. ԱԲՈՎՅԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ . . 16
Է. ՍԱՐԳՍՅԱՆ
Քարայծի մեծ վիհում . 18
Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Մանկության օրեր . . 22
Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Մի կերպը . . 25
«ԵՐԳԵԼՈՒ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՍ ՆՄԱՆ Է ԾԱՐԱՎԻ...» . 26
Ս. ՄԿՐՏՉՅԱՆ
Թագավորն ու փիլիսոփան . . 29
Ն. ՄԻՆԱՍՅԱՆ
Նորավանք . . 30
ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ . 31
ԳԻՏԵ՞Ք, ՈՐ ԺԱՄԱՆՑ . . . 32

Շապիկի առաջին էջը՝
ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



# ԱՇԽԱՐՀԻՆ, ԱՅՈ՛, ՄԱՔՐՈՒԹՅՈՒՆ Է ՊԵՏՔ...

Օրվա հեղձուցիչ ու խեղդող տոթին
        հորդ անձրև է պետք,
Որ չնվաղենք ցամաք ընկած ձկների պես:
Աշխարհին, այո՛, մաքրություն է պետք,
Պարույր Սևակի ասած խոսքերով:
Գարնան արտերի ամեն մի ծիլին
Գոնե մի փոքրիկ, պաղ քրտինք է պետք,
        ջերմություն ու ջուր,
Որ ծիլը աճի, տա բարիք ու բերք:
Խավարի մեջ՝ լույս, որ չխարխափեն
                                mարդիկ անտեղի:
Մեռնողներին՝ հույս,
Որ կյանքն աշխարհում հարատևի:







ԱՐՍԵՆ ԻԽՏԻԱՐՅԱՆ, 15 տ.
«Երիտասարդություն»
«Խաղաղ փողոց»
«Գարնան առաջին օրը»



# ԻՄ ԳՅՈՒՂԻ ՄԱՍԻՆ

Սիրում եմ գյուղն իմ հարազատ,
Իմ քարի օջախը, ուր ծնվել եմ,
Որտեղ ինձ զգում եմ ուրախ և ազատ,
Անհոգ թռչկոտող ճնճղուկի պես։
Այգեստաններ ու դաշտեր լայնահուն
Եվ լեռնագագաթներ երկնասույզ՝
Պարուրված ոսկի շողով արևի։
Ամառն է փռել թևերը էլի,
Ինչպիսի՜ բերկրանք,
Երբ վախկոտ զեփյուռը փարվում է դեմքիդ
Ու լսում ես դու խշշոցն անտառի,
Ոտքդ թրջվում է վաղորդյան ցողով,
Իսկ գիշերները լի են աստղերով,
Կյանքի արբունքից արբեցածի պես
Վերանում ես դու... նայում ես վերև,
Բազում երազներ, տենչեր են ծնվում
Քո հոգու խորքում։
Փորձում ես տեսնել պատկերդ այնտեղ՝
աստղոտ հայելում,
Ինքդ քեզ կրկնել.
գեղեցիկ ես, կյանք։



ՍՈՒՐԻԿ ՄԵՀՐԱԲՅԱՆ, 15 տ.
«Ջրտուք»

# ՁԵՌՔԵՐ

Փոքրիկ ափերը փափուկ են այնպես,
Մաքուր ու անբիծ, մաշկը սպիտակ,
Սինթետիկ ափեր են ասես,
Այլ նյութից ստեղծված։
Իսկ իմ ձեռքերը լրիվ ուրիշ են...
Ես գյուղացի եմ,
Ու տեսեք ինչպես կոպիտ և չոր են,
Կոշտուկով հարուստ.
Բայց դուք էլ գիտեք՝ ձերից ուժեղ են
Հողին նվիրված այս ձեռքերը իմ,
Ձեռքերի սև կամ ճերմակը ում է հարկավոր,
Եթե նրանք աշխարհին չեն տալիս ոչինչ,
ոչ մի օր։
Ոչինչ չարարող, անուժ ձեռքերը չեն,
Որ իրենց ափերով պահում են հողի
ծանրությունը։

ՀԱՄԵՍՏ ՄԵՍՐՈՊՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջանի
գ. Շենավան, 10-րդ դ.

ԱՐՏԱՇԵՍ ԻԳԻԹՅԱՆ, 13 տ. «Սևան»



ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# Հավաքածու՝ մողեսի պոչի

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



Մեկը սիրում է հավաքել դրոշմանիշեր, երկրորդը՝ փոքրիկ ավտոմեքենաներ, երրորդը՝ հին դրամներ, չորրորդը՝ տեսակ-տեսակ ծխախոտատուփեր, հինգերորդը՝ գինիների տեսակներ... Մուշեղն էլ ուզեց հավաքածու ունենալ: Դժվար բան չի: Նա տեսել է, թե ինչպես անտառի լորենիներից մեկի մեջ խրվել-մնացել են եղջերվի եղջյուրներ: Տեսնես ի՞նչ գել ու գազանից հալածված եղջերուն փախչելու ժամանակ եկել թափով խփել է լորենուն, եղջյուրները պահ տվել նրան, ու ինքը... չկա: Ա՜յ թե կարելի լիներ այդպիսի եղջյուրների հավաքածու ունենալ: Բայց դա մի՞թե հնարավոր բան է:

Նա մի ժամանակ թիթեռներ էր բռնում, չորացնում: Բայց ձանձրացավ: Հետո սկսեց մորեխներ հավաքել: Դրանից էլ ձանձրացավ: Հետո որոշեց անպայման մողես բռնել: Քանի անգամ է տեսել, որ մողեսները տաք քարերի վրա պառկում են ու էլ ուժ չեն ունենում գնալու: Էնպես էլ ամբողջ փորով շնչում են, որ էլ ասելու բան չէ: Նայիր, տես, անպայման ընտրում են իրենց մաշկի գույնի քար: Լավ նայիր, ոնց որ նույն ներկով էլ ներկված լինեն: Կանաչ, մամռոտ քարեր շատ են սիրում, կպչում ու պոկ չեն գալիս: Բայց հենց մի ձայն է լսվում, շտապ կորչում են քարերի արանքում:

Մուշեղը գնաց-նստեց ճամփեզրի քարերի մոտ: Ձեռքի բանկան դրեց մի կողմ: Ինչ կա որ, կբռնի ու կգցի բանկայի մեջ և կտանի տուն: Կիմանա, թե ինչ է սիրում ուտել մողեսը, դրանով էլ կկերակրի: Ահա և մողեսը: Ուրեմն մամռոտ քարին էնպես է կպել, որ հազիվ է նկատվում:

Հիմա կբռնի:

— Մողե՛ս:

Մողեսը ձայն հանել չէր կարող, բայց տաք գլուխը պոկեց տաք քարից:

— Մողե՛ս,— հանգիստ, իր ուժերի վրա վստահ, ասաց Մուշեղը,— արի՛, ի՞նչ կլինի, դու քո կամքով մտի՛ր բանկայի մեջ:

— Միամի՛տ տղա,— անձնմար ծղպտաց մողեսը:— Ես հո քեզ համար մորե՞խ չեմ: Ես էս կանաչ քարերի թագավորի տղա թագավոր եմ՝ իշխանաց իշխան մողեսների ընտիր ժառանգորդը ապրետական...

— Եթե էդքան մեծ բան ես, ինչու՞ դուրս չես գալիս մեծ աշխարհ,— մի քիչ զարմացած ու հավատացած հարցրեց Մուշեղը:

— Էս կանաչ, մամռոտ քարերը, էս քարերի մութ ճեղքերը թողնեմ, ու՞ր գնամ: Սա իմ պապերից եկած ժառանգությունն է: Էս քարերից ես իմ նախնիների սուրբ հոտն եմ առնում, նրանց ձայնն եմ լսում:

— Ոչինչ,— ասաց Մուշեղը,— արի՛ քեզ տանեմ մեր տուն:— Եվ զգուշությամբ ձեռքը մեկնեց:

— Վայ թե ճիշտ ուզում ես բռնե՞լ,— ինքն իր կանաչ աչքերին չհավատաց Մողեսը:

— Բա ի՞նչ անեմ, էդ նպատակով եմ բանկաս բերել: Հո դատարկ չե՞մ տանելու: Ուզում եմ բռնել և կբռնեմ:

— Դե, հիմա փախա, բայց, լա՛վ տղա, մյուս անգամ որ մողես բռնելու լինես, միայն պոչից կբռնես,— խրատ տվեց Մողեսը ու մտավ քարերի ճեղքը:

Մուշեղի մեջ մեծ ցանկություն առաջացավ անպայման ունենալ մողեսների հավաքածու: Թիթեռնիկին բռնում է թևերից, մորեխին՝ ինչպես պատահի: Ավելի ճիշտ, վերցնում է պապիկի հնամաշ գլխարկը և որտեղ մորեխ է տեսնում, գլխարկը դնում է մորեխի վրա ու կամացկամաց մատները մոտեցնելով բռնում: Չի հիշում, թե ինչ գործ բռնեց, բայց դրանում ինչ կա, բռնեց: Ապրի մողեսը, սովորեցրեց, կբռնի պոչից: Եվ մի քանի օր հետո բռնեց հենց իր ուզած մողեսը: Սուսուփուս գնաց ու առանց խոսք ու զրույցի, առանց զգուշացնելու, ձեռքը մեկնեց, բռնեց մողեսի պոչից և գցեց բանկայի մեջ ու ծտի նման թռավ հասավ տուն: Տանը բանկան բացեց ու... Մողես չկա՛, կա մողեսի պոչ: Բայց դու պոչ չէիր ուզում, Մուշե՛ղ, դու ուզում էիր մողեսին ամբողջությամբ՝ գլխից մինչև պոչ: Այս ի՞նչ բան էր... Միայն մողեսի պոչ: Մուշեղին ինչո՞ւ թվաց, թե ինքը գողություն է արել, գողացել է, էն էլ ի՞նչ՝ եղածչեղած մողեսի մի պոչ: Մողեսի պոչն առած՝ գնաց մողեսի դուռը: Մողեսը պառկել էր քարին ու, ա՜յ քեզ զարմանք, էլի պոչ ուներ:

— Ես քո պոչը բերել եմ,— ասաց Մուշեղը:

— Շատ շնորհակալ եմ, պահի՛ր ինձանից քեզ հիշատակ: Ես արդեն նոր պոչ ունեմ,— պատասխանեց Մողեսը:

— Որտեղի՞ց: Ախր, ես տարել էի, ահա ետ եմ բերել:

— Դա մեր գաղտնիքն է, չեմ ասի: Եթե կռվի դաշտում մեկն ականջը թողնում է, այնուհետև իր ամբողջ կյանքում նա զրկված է մնում ականջից: Բայց մենք շատ շտապ նորոգում ենք մեր կորցրած պոչը, և ոչ մեկը չի իմանում, որ մենք պոչ ենք կորցրել:

— Իսկ ինչպե՞ս է անում ձեր նոր պոչը,— հետաքրքրությունը չէր կարողանում զսպել Մուշեղը:

— Դա արդեն ոչ իմ խելքի բանն է, ոչ էլ, մանավանդ՝ քո խելքի: Բնությունը ամեն մեկին մի շնորհք է տվել: Առյուծին առյուծություն է տվել, արջին՝ արջություն, մեզ էլ տվել է այս շնորհքը՝ նեղն ընկար՝ պոչդ թող ու փախիր...

— Դա հասկացա: Բայց չհասկացա, թե ինչպե՞ս է նորից անում ձեր պոչը,— համառում էր Մուշեղը:

— Այդ հենց իմացար, էլ չես գա, թե՝ մողես եմ բռնում, որ տանեմ բանկայի մեջ պահեմ: Ես թիթե՞ռ եմ, մորե՞խ եմ: Ես մողես եմ, մողե՛ս... Ուզում ես արի օրը մի պոչ տար...

— Քո պոչերը քեզ պահի... Մի բան, որ հա վերցնես, տեղը հա նորը դուրս գա՝ ու՞մ է պետք:

Մուշեղը մողեսի կանաչ պոչը գցեց մողեսի կանաչ քարի վրա ու գնաց:

Բայց չհրաժարվեց հավաքածու ունենալու մտքից: Իսկ ինչ հավաքի, ինչ չհավաքի, հանկարծ եկան, աչքի առաջ տնկվեցին այն եղջյուրները, որ գայլերից հալածված եղջերուն, փախած եկել էր, խփել լորենուն, եղջյուրները պահ տվել ծառին, ինքը... անհետացել:

Ա՜յ հավաքածու եմ ասել... Անտառում ո՞չ գայլն է վերացել, ո՞չ եղջերուն... թե չէ մողեսի պոչ... լսողն ի՞նչ կասի...

# Ավիամոդելիստի ձեռքից ամեն ինչ գալիս է




Ավիամոդելիզմը տեխնիկական սպորտի առավել հետաքրքիր ձևերից է: Այն նպաստում է մարզիկի և՛ տեխնիկական, և՛ սպորտային հնարավորությունների զարգացմանը: Թե՛ մեկը և թե՛ մյուսը անհրաժեշտ է յուրաքանչյուր ավիամոդելիստի:

Ավիամոդելիզմը լոկ հրապուրանք չէ կամ էլ հաճույք: Այն ունի իր պրակտիկ և տեսական նշանակությունը: Մենք՝ ավիամոդելիստներս, չգիտենք մեկին, որը ավիամոդելիստ լինի ու չկարողանա գրլուխ հանել տեխնիկական որևէ մասնագիտությունից: Ավիամոդելիստները լավ խառատներ են, լավ ֆրեզերագործներ և այլն: Մի խոսքով՝ նրանց ձեռքից ամեն ինչ գալիս է: Դա էր գուցե պատճառը, որ Բյուրականի աստղադիտարանի ռադիոանտենաների մակետի պատրաստումը Վիկտոր Համբարձումյանը վստահել էր միայն մոդելիստներին:

Ինքնաթիռի թռչող մոդելի կառուցման ժամանակ ավիամոդելիստը առնչվում է ֆիզիկայի, մաթեմատիկայի, քիմիայի և այլ բնական գիտությունների օրենքների հետ: Եթե լծակների հավասարակշռության օրենքը դպրոցականները անցնում են ութերորդ դասարանում, ապա այդ նույն օրենքը կյանքում ավիամոդելիստը կիրառում է երրորդ, չորրորդ դասարանից սկսած:

Փորձարկումների և հատկապես պաշտոնական մրցումների ժամանակ ավիամոդելիստը կրում է ֆիզիկական մեծ ծանրաբեռնվածություն՝ մանավանդ ազատ թռչող (այն մոդելները, որոնք ներքևից չեն կառավարվում) մոդելների մրցումների դեպքում: Առանց տոկունության, ուժի և ճարպկության այստեղ դժվար է հաջողություն ունենալ: Ազատ թռչող մոդելը ստարտից հեռանում է բավական մեծ արագությամբ՝ 15—30 կմ/ժամ: Սպորտսմենի խնդիրն է այն ժամանակին ետ վերադարձնել, հաղթահարելով ճանապարհին հանդիպող բոլոր բնական արգելքները՝ ճահիճներ, ջրափոսեր, ձորեր, բլրակներ և այլն: Երբեմն անհրաժեշտ է լինում վազել կիլոմետրեր: Այստեղից էլ՝ բնական է, որ յուրաքանչյուր սպորտսմեն գոնե մի քիչ կրոսսմեն պետք է լինի:

Ավիամոդելիզմի նշանակությունը մեծ է ինչպես ժողովրդական տնտեսության, այնպես էլ գիտության համար: Արդեն վաղուց, շատ զարգացած երկրներում՝ ԳԴՀ, Չեխոսլովակիա, Հունգարիա, Ճապոնիա և այլն, օգտագործվում են ռադիողեկավարվող ավիամոդելներ՝ որպես եղանակի կանխագուշակներ: Դրանց վրա

տեղակայվում են եղանակի կանխագուշակման տվիչներ (ճնշման տվիչ, ջերմաստիճանի տվիչ, քամու արագության տվիչ և այլն), որոնք օդային շերտերի ֆիզիկական վիճակի մասին տվյալներ են հաղորդում օդերևութաբանական կայաններին: Ճապոնացիները մոդելները օգտագործում են նոր ծնվող հրաբուխների առաջին ժայթքումները նկարահանելու համար, քարտեզագրության համար և այլն: Նման տեղերում փոքրիկ մի մոդելը փոխարինում է մի ամբողջ լայների՝ իր անձնակազմով, և գլխավորը՝ վթարի դեպքում մարդկային զոհեր չի տալիս:

Մեզ մոտ՝ Սովետական Միությունում մոդելներն օգտագործվում են խոշոր գործարանների շրջապատի մթնոլորտի աղտոտվածության աստիճանն իմանալու համար: Իսկ Լենինականի գեոֆիզիկայի և սեյսմոլոգիայի ինստիտուտում փորձեր են արվում ավիամոդելների օգնությամբ հեշտացնել այնպիսի գեոֆիզիկական աշխատանքներ, ինչպիսիք են քարտեզագրությունը մագնիսամեթոդական աշխատանքներում, անոմալ գեոֆիզիկական դաշտերի հայտնաբերումը և այլն:

Ի՞նչ ծրագրեր ունենք մենք՝ Լենինականի պիոներների պալատի ավիամոդելային թիմի անդամներս:

Առաջիկա հանրապետական մրցումներում գրավել մրցանակային տեղ, որը մեր գլխավոր խնդիրն է:

Թիմը հանրապետության դպրոցական թիմերի մեջ ակտիվներից մեկն է, որի հետ մրցելը և՛ դժվար է, և՛... հաճելի:

Թիմի կազմում եղել են շատ մոդելիստներ, որոնք դարձել են հանրապետության և ՍՍՀՄ չեմպիոններ (Հովհաննիսյան Գագիկ, Խաչատրյան Արմեն, Հովհաննիսյան Արայիկ, Դավթյան Գագիկ և ուրիշներ), նրանց շնորհիվ թիմը բազմիցս գրավել է մրցանակային տեղեր: Հիմա նրանք աշխատում են մեր հանրապետությունում և հանրապետությունից դուրս, կոնստրուկտորներ են, օդաչուներ, գեոֆիզիկներ, խառատներ, արտադրության առաջավորներ և այլն:

Դպրոցականների ավիամոդելիզմի խմբակը օգնում է լուծելու իր համար ամենակարևոր և դժվարին հարցը՝ կյանքում ի՞նչ դառնալ, հարց, որը հայտնի է մասնագիտական կողմնորոշում անվանումով:

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ



ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՍԻՐԱՄԱՐԳԸ

Սիրամա՛րգ ջան,
Դու ինձ տուր
Նախշու՜ն, նախշու՜ն
Մի փետուր:
Քեզ համար դա
Ի՞նչ է որ,
Իսկ ինձ
Շա՜տ է հարկավոր:
Ես գլխարկիս
Կկապեմ,
Ընկերներիս
Կխաբեմ:
Կասեմ.
— Հնդիկ եմ, տեսե՛ք,—
Կամ՝
— Սիրամարգ եմ,— կասեմ:—

Սիրամարգը՝
Պոչը բաց,
Ուրա՜խ-ուրախ
Կչկչաց.
— Ընկերներդ
Գիժ հո չե՞ն,
Ա՛յ գիժ,
Քեզ կճանաչե՜ն:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

## ՄԻ ԲԱԺԱԿ ԾՈՎ

Մի բաժակ ջրի մեջ
փոթորիկներ, անշուշտ, չեն լինում,
մարգարիտներ չեն լինում,
ձկներ ու ձկնկիթներ չեն լինում,
բայց լինում են
հեռավոր ծովերի մրմունջները:
Ծովին փռված երեկոյի հայացքը,
ալիքի վազքը,
ավազը,
և նավակը,
որ օրորվում է փրփուրների վրա:

## ԴԵՂՁԵՆԻՆԵՐԸ ԾԱՂԿՈՒՄ ԵՆ

Լռությունը ականջները սրել է
ցանկապատի տակ,
մթության մեջ
հոգնատանջ ձայները
անաղմուկ հոսում են
գյուղի եզերքով:

Իմ փոքրիկ այգին
ոտքից գլուխ լցված է
ծաղկելու մոլուցքով:
Նրա խաղաղ շնչառության մեջ
թերթ-թերթ
բացվում ու կարմրում են
բողբոջները դեղձենու ճյուղերին:

Մայր ճնճղուկի սիրտը
հանույքից ճմլվում է
լռության փետուրների տակ:
Կանաչող ճյուղերի միջից
լուսավոր մի զգացում
մեկիկ-մեկիկ
ծաղիկներ է շարում
տերևների կողքին:

## ՀՈՒՇԱՐՁԱՆ ԵՐԳԻ ՀԱՄԱՐ

Լռության պատվանդանին
ես ուզում եմ դնել՝
մի բառ—
որի մեջ թրթռա լույսը,
մի տող—
որի խորքում տեղ լինի
ծովի և ցամաքի համար,
մի քառյակ—
որի մեջ կենաց ծառը
ազատորեն ծաղկի
երկնքի կամարի տակ.
մի երգ—
որից ներշնչված
երազի թռչունը
գիշերվա ճյուղից թռչի
լուսաբացի ճյուղին:

ՄԱՐԻՏԵ ՇԱԼՏԻՏԵ

# Խաղալիքը

Արդեն երկրորդ օրն է, ինչ մայրիկը տատիկի հետ չի խոսում: Անդրյուսի համար դա շատ տհաճ է, և նա ուզում է պատճառն իմանալ:

— Մայրի՛կ, ի՞նչ է պատահել: Ի՞նչ վատ բան է արել տատիկը:

— Քո գործը չէ,— դժկամորեն պատասխանում է մայրիկը:— Ավելի լավ է, գնա՛ քաղաք և շաքա՛ր գնիր: Քո սիրած մուրաբան եմ եփելու:

Սակայն Անդրյուսը ուրախությունից վեր-վեր չի թռչում սովորականի նման: Ինչի՞ն է պետք այդ թեկուզ աշխարհի ամենահամեղ մուրաբան: Մայրիկը, պարզապես, ուզում է նրան իրենից հեռացնել, որպեսզի հարցեր չտա: Բայց գնալ պետք է: Անդրյուսը վերցնում է պայուսակն ու դրամը: Շաքար՝ թո՛ղ շաքար լինի: Երբ տանն ամեն ինչ կարգին չէ, ավելի լավ է մի տեղ չքվել:

Մեծ, մութ նախասենյակում, որը տունը երկու մասի է բաժանում, նա տատիկին է հանդիպում: Անդրյուսը չի կարող հենց այնպես անցնել նրա կողքով:

— Տատի՛կ, շաքարի եմ գնում: Քեզ բան պետք չէ՞:

Տատիկը ուզում է շոյել Անդրյուսի գըլուխը, բայց դուռը բացվում է, և չարությամբ նրանց է նայում մայրիկը:.

— Շո՛ւտ արա, Անդրյո՛ւս: Շա՞տ պիտի քեզ սպասեմ:

Անիվների օղակները խփվում են քարերին, կարող են ոլորվել, սակայն Անդրյուսի հոգը չէ: Նա նույնիսկ ուզում է հեծանիվը ջարդվի, որ շուտ տուն չվերադառնա: Քիչ է մնում՝ նստի ճամփեզրին, լաց լինի, որ ամեն անցորդ խղճա իրեն: Մայրիկն ու տատիկը հաշտ չեն: Եվ ինչո՞ւ է մայրիկը տատիկի վրա բարկացել: Անդրյուսը ոչ մի կերպ չի հասկանում: Տատիկն այնքա՜ն լավն է, այնքա՜ն բարի է, իրեն շատ է սիրում: Նա Անդրյուսի վրա չի բարկանում նույնիսկ այն դեպքում, երբ մայրիկը բարկությունից գոտին է ձեռքը վերցնում:

Անդրյուսն առաջին անգամն էր այդպիսի վիճակի մեջ լինում: Տատիկի հետ խոսի՝ մայրիկը կդժգոհի, չխոսի՝ տատիկը կվշտանա: Անելանելի վիճակ է: Այ թե շուտ մեծանա՜ր, այն ժամանակ կիմանար՝ ինչպես վարվել: Եվ չկա մեկը, որի հետ խորհրդակցի: Հայրիկը գործուղման մեջ է, Արվիդասին այդ մասին ամոթ է պատմել:

Գնելով շաքարը՝ Անդրյուսը մտնում է «Կուլտապրանքներ» խանութը: Եվ անմիջապես տեսնում է հիանալի մի խաղալիք: Ստվարաթղթե մեծ վահանի վրա նկարված են ճանապարհներ, իսկ դրանց վրա կանգնած են փայլուն, փոքրիկ ավտոմեքենաներ, որոնց կարելի է ղեկավարել վահանի կենտրոնում տեղադրված ղեկով: Խաղալի՜ք չէ, այլ՝ երազանք:

Մեկ էլ խանութ է մտնում Արվիդասի հայրիկը և խնդրում է ցույց տալ հենց ա՛յդ խաղալիքը: Վաճառողը այն տեղադրում է սեղանի վրա և խրոցը միացնում է վարդակին:

— Էլեկտրակա՜ն է,— բացականչում է Անդրյուսը:

— Այո՛, այո՛,— ժպտում է Արվիդասի հայրիկը:— Ե՛կ այստեղ, պիտի փորձարկենք:

Մեքենաները սլանում են մեկ շրջանով, մեկ ուղղահայաց, մեկ դանդաղ են ընթանում, մեկ էլ սլանում են մրրիկի նման: Իսկ ճանապարհներին այնքա՜ն արգելքներ կան: Միայն թե չքնես, հասցնես ղեկը պտտել:

Արվիդասի հայրիկը գնում է խաղալիքը: Նա վաճառասեղանին է դնում քսանհինգ ռուբլի. այդքան արժե այդ հրաշալի, զարմանալի խաղալիքը: Բայց Անդրյուսի համար այդպիսին, իհարկե, ոչ ոք չի գնի:

— Ե՛կ Արվիդասի մոտ, կխաղաս սրտիդ ուզածի չափ:

— Շնորհակալ եմ,— պատասխանում է Անդրյուսը:

Նա սլանում է տուն՝ մոռանալով մայրիկի և տատիկի վեճը: Միայն թե շուտ տեղ հասցնի շաքարը և հասնի Արվիդասի մոտ:

Մայրիկին Անդրյուսը գտնում է շատ



Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

հուզված: Նա քիչ է մնում լաց լինի:

— Որտե՞ղ էիր այսքան ժամանակ: Ես արդեն կարծում էի մեքենայի տակ ես ընկել:

Անդրյուսը մեղավոր ժպտում է, դատարկում է շաքարը և պատմում նոր խաղալիքի մասին, որը հենց նոր Արվիդասի համար էին գնել: Հիմա կվազի նրա մոտ խաղալու: Մայրիկը լսում է, հետո բացում է սեղանի դարակը և սկսում է ինչ-որ բան քրքրել: Հետո հանում է... քսանհինգ ռուբլի:

— Վերցրու՛ և գնի՛ր քեզ համար այդ խաղալիքից:

— Մայրի՞կ:— Անդրյուսը աչքերին չի հավատում:

— Դե լա՜վ, վերցրո՜ւ,— մայրիկը համբուրում է որդու գլուխը,— գնա՛: Միայն թե չուշանաս, թե չէ կանհանգստանամ:

Նա ճանապարհում է Անդրյուսին մինչև դռնակը և երբ տղան արդեն ոտքը հեծանվի ոտնակին էր դրել, հանկարծ ասում է.

— Եթե տատիկը քեզ սիրեր, ինքը քեզ փող կտար: Մեծ թոշակ է ստանում, բայց մի կոպեկ ձեռքից դուրս չի գալիս: Եվ ծեր մարդու ինչի՞ն է պետք փողը:

Անդրյուսը շուռ է գալիս տատիկի լուսամուտների կողմը: Տատիկը նստել է սեղանի մոտ և տխուր իրեն է նայում: Բայց այժմ տատիկն իրեն բոլորովին չի հետաքրքրում: Նա միայն մտածում է, որ տատիկը, իրոք, կարո՛ղ էր ինքը խաղալիքի համար փող տալ: Ամեն ամիս փոստատարն այնքա՜ն փող է բերում նրան: Իսկ տես, թե որքա՜ն բարի է մայրիկը: Հիմա Անդրյուսը մեծավարի կգնի այդ չլված թանկ խաղալիքը: Վաճառողն անպայման կհարցնի՝ որտեղի՞ց նրան այդքան փող: Եվ Անդրյուսը հպարտորեն կըպատասխանի. «Մայրիկս է տվել, նա շատ բարի է և ինձ շատ է սիրում»:

Սակայն վաճառողը բոլորովին չի էլ հետաքրքրվում, թե նրան որտեղի՞ց այդքան փող: Անտարբեր փաթաթում է խաղալիքը թղթի մեջ: Անդրյուսը վիրավորվում և, այնուամենայնիվ, ասում է.

— Իմ մայրիկը բարի է: Քսանհինգ ռուբլի նա ինձ տվեց:

Վաճառողը ժպտում է ու ոչինչ չի պատասխանում:

Տանը Անդրյուսը հեծանիվը գցում է հասմիկի թփերի տակ և վազում իր սենյակը: Նախասենյակում նորից հանդիպում է տատիկին: Տատիկն ինչ-որ բան է ասում նրան, բայց Անդրյուսը չի լսում և դուռն իր ետևից փակում է:

Խաղով տարված, նա չէր նկատել, թե ինչպես վրա հասավ երեկոն:

— Բավական է աղմկես քո մեքենաներով,— սենյակ է մտնում մայրիկը,— գնա՛ ցինկի ետևից, բոլորն արդեն գնացել են:

Անդրյուսը վերցնում է պարանը, աղ ցանած հացի կեղևը՝ Սևակոտոշի համար, և վազում է սարը, որտեղ հարևանները, բարձր զրուցելով, սպասում են իրենց կովերին: Հանկարծ թփերի միջից, պոկոտելով կապանքները, դուրս է թռչում մորաքույր Անելյայի հորթուկը: Նրա ետևից՝ մյուս կովերը, հորթերը, ցըլիկները, նրանց մեջ և՝ Սևակոտոշը: Ամբողջ նախիրը միանգամից այնպե՛ս է պուկ տալիս ու սլանում, որ կարծես նրանց ետևից գայլեր են ընկել:

Սևակոտոշը փախչում է Անդրյուսի ձեռքից:

— Կանգնի՜ր, կանգնի՜ր,— կանչում է Անդրյուսը:— Կանգնի՜ր, Սևակոտո՛շ: Ու՞ր ես փախչում:

Նա հոգնում և կանգ է առնում: Անմիջապես հանդարտվում է նաև ցլիկը: Միայն այդ ժամանակ է Անդրյուսը նկատում, որ տատիկը չկա: Նա միշտ իր կովի ետևից է գնում Անդրյուսի հետ միասին: Իսկ նրա կովն այդ պահին արդեն հանգիստ արածում է կոլտնտեսության վարսակի արտերում: Է՛հ, թող արածի: Եթե մայրիկը բարկացել է տատիկի վրա, Անդրյուսը նրա կովը տուն չի քշի: Թող նա ինքը գնա իր կովի ետևից, իսկ ավելի լավ է՝ թող տուգանք մուծի տրորած վարսակի համար: Փող ունի: Իսկ Անդրյուսը կձևացնի, թե չի տեսնում:

Այդ ժամանակ մորաքույր Ալբինան իր կովը թողած, դաշտից դուրս է քշում տատիկի Աստղիկին: Նա խոնարհաբար դուրս է գալիս և սովորականի նման կանգնում է Սևակոտոշի կողքին: Անդրյուսն ուզում է նրան հեռու քշել, բայց մորաքույր Ալբինան նորից է միջամտում.

— Կովը տու՛ն քշիր, չէ՞ որ տատինդ է: Լավ չէ՛: Հետո՞ ինչ, որ մայրիկդ նրա հետ վիճել է: Դու նրա թոռն ես:

Անդրյուսը ամաչում է և գլխահակ գընում է գյուղ: Իսկ այնտեղ նրանց դիմավորում է տատիկը: Թեև երեկո է և տաք, նա փաթաթվել է հին բաճկոնակի մեջ, քայլում է, տարօրինակ կծկվելով, ձեռքերը փորին սեղմած:

— Շնորհակա՜լ եմ, թոռնի՜կս, որ Աստղիկին քշել-բերել ես,— կամաց ասում է նա:

— Այդ ես եմ նրան ասել,— վրա է բերում մորաքույր Ալբինան:

Անդրյուսը կարմրում է: Նրա բախտից տատիկը լռում է:

Գիշերը Անդրյուսի փորը սկսում է սաստիկ ցավել: Ուժ չուներ նույնիսկ լաց լինելու: Երիտասարդ բուժքույրը, որ եկավ մայրիկի հրավերով, սեղմում է նրա փորը.

— Իմ կարծիքով, կույր աղիքի բորբոքում է: Հիմա «շտապ օգնություն» կկանչեմ: Շտապ հարկավոր է հիվանդանոց տանել:

«Շտապ օգնությունը» շատ շուտ է գա-

լիս, և Անդրյուսը չի համցնում ոնց որ հարկն է վախենալ, հայտնվում է վիրահատական սեղանին:

Վիրահատությունը հաջող էր: Բայց անցնում է մի օր, երկրորդը, և Անդրյուսին այցելող չկա: Ո՛չ մայրիկը, ո՛չ տատիկը: Հայրիկի մասին խոսք լինել չի կարող, նա վերադառնալու էր երկու շաբաթից միայն: Անդրյուսը թաքուն լալիս է. «Ինչո՞ւ են բոլորն իրեն մոռացել»: Իսկ ինքն այնպե՜ս կուտեր մայրիկի մուրաբաները և տատիկի կարկանդակները: Հետո սկսում է բարկանալ: Թող, հապա, փորձե՜ն գալ: Նա շուռ կգա պատի կողմը, չի խոսի և քաղցրավենիքին չի էլ դիպչի: Նա ցույց կտա, թե ի՛նչ է նշանակում իրեն մոռանալ:

Երրորդ օրը, պատից բռնելով, Անդրյուսը հիվանդասենյակից դուրս է գալիս: Միջանցքում հանդիպում է քեռի Պյատրիսին: Տղան ուրախանում է: Համենայն դեպս մոտիկ մարդ է, հարազատ գյուղից:

— Տխրու՞մ ես,— հարցնում է հարևանը: — Ես էլ եմ տխրում:

— Դե, ո՛չ,— պատասխանում է Անդրյուսը:— Շուտով տուն եմ գնալու: Ուրբաթ օրը ինձ դուրս են գրելու:

Քեռի Պյատրիսը լռում է: Հետո շուռ է գալիս դեպի լուսամուտը և ասում.

— Դու ոչինչ չե՞ս լսել: Ասում են, մեր գյուղում մարդ է մահացել...

— Մեռե՞լ է: Ո՛չ, չեմ լսել...

Հարևանը նորից տղայի կողմն է շուռ գալիս և արդեն ժպտում է.

— Քեզ ի՞նչ կա որ: Քեզ արդեն դուրս են գրում: Իսկ ես նույնիսկ չգիտեմ, թե որքան ժամանակ դեռ պետք է այստեղ պառկեմ:— Եվ Անդրյուսին մի քանի կոնֆետ է տալիս:— Կե՛ր, իսկ ես սենյակ գնամ:

Երեկոյան գալիս է մայրիկը: Մոռանալով իր բարկացած լինելը, Անդրյուսը ուրախանում է, գգվում է մորը: Նրանք նստում են մահճակալին: Մայրիկը զամբյուղից հանում է աշխարհի ամենահամեղ մուրաբան, սեղանիկին է դնում տավարի խաշած մսի մի կտոր: Որտեղի՞ց տավարի միսը: Տանը նրանք սովորաբար խոզի միս են ուտում: Եվ հանկարծ Անդրյուսի ականջին է ընկնում քեռի Պյատրիսի ձայնը. «Դու ոչի՞նչ չես լսել: Ասում են, մեր գյուղում մարդ է մահացել...»

— Ցինկին ենք մորթել, Սևակոտոշին,— հազիվ լսելի շշնջում է մայրիկը և աչքերը մի կողմ թեքում...

Անդրյուսին արդեն ամեն ինչ պարզ է: Սևակոտոշին մորթել են հոգեհացի համար:

— Տատի՛կ, տատի՛կ,— Անդրյուսը դառնորեն լալիս է:

Մայրիկը լռում է, հետո ասում է, կարծես ինքն իրեն.

— Մարդն ապրել չգիտե: Ուրախանում է դատարկ բաներից: Նրան թվում է, թե հավերժ ապրելու է: Ժամանակ չի ունենում բարի խոսք ասելու: Իսկ երբ պատրաստվում է ասել, էլ ու՞մ ասի...

Անդրյուսը բռունցքով սրբում է արցունքները և հանկարծ հասկանում է. մայրիկն արդեն այնքան էլ երիտասարդ չէ, ինչպես ինքն էր առաջ կարծում:

— Մայրի՛կ,— բռնում է նրա ձեռքը:— Մայրի՛կ, դու ամեն օր եկ ինձ մոտ: Բայց չէ՛, պետք չէ՛: Ինձ արդեն ուրբաթ օրը դուրս են գրելու...— Անդրյուսը ջանք է թափում խոսակցությունը թեքելու, որպեսզի մայրիկը չմտածի տատիկի հետ իր վեճի մասին և ինքն իրեն չնախատի...

Հիվանդանոցից Անդրյուսին տանում է այն նույն երիտասարդ բուժքույրը: Նա գործեր է ունեցել շրջկենտրոնում և եկել է իր ետևից: Ցնցվելով կիսադատարկ ավտոբուսում՝ Անդրյուսը ոչ մի կերպ չի կարողանում հավատալ, որ տանը տատիկն արդեն չի դիմավորի իրեն: Չի կարող պատահել: Հիմարություն է դա: Հիմա կգնա և առաջին հերթին կմտնի նրա մոտ: Տատիկը վառարանի մոտից շուռ կգա ու կգրկի իրեն: Հետո կնստեցնի սեղանի մոտ և կբերի թարմ կարկանդակներով լի ափսեն:

Սակայն որքան մոտենում են տանը, այնքան մթնում է նրա երևակայությունը, չնայած նա ամբողջ ուժով ջանում է իրեն խաբել: Ահա և տունը: Անդրյուսն արագորեն անցնում է բակը: Բացում է պատշգամբի ճռռացող դուռը և ոտքերի թաթերի վրա, աննկատելի մտնում է տատիկի սենյակը:

— Տատի՞կ,— անհամարձակ կանչում է նա:

Նրա ձայնից տանը քար լռություն է տիրում: Տան մյուս կեսում ճռռում է խորդանոցի դուռը: Անդրյուսին է մոտենում հայրիկը: Նա հատակից բարձրացնում է որդուն և սեղմում է կրծքին:

Իսկ Անդրյուսը միայն մի բան է ուզում, որպեսզի հայրիկը գրկի իրեն այդպես երկա՛ր-երկա՛ր և էլ երբեք բաց չթողնի:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# Ո՞վ է մեղավոր... և ինչո՞ւ

Արամը գերազանցիկ է, իսկ քույրը՝ Նունեն, դեռ ոչ: Նունեն գրասեղանի մոտից ամբողջ օրը չի հեռանում: Դպրոցում և տանը խոսք է տվել գերազանցիկ դառնալ: Ու տնեցիներն ամեն ինչ անում են, որ նա խոստումը կատարի:

— Նունե՛, գոգնոցդ ես կարդուկեմ, անցիր դասերի՛դ,— ասում է մայրիկը:

— Նունե՛, դու պիտի լավ սովորես, որ ուժերդ հերիքեն,— անհանգստանում է տատիկը:

Երբ Նունեն պարապում է, տատիկը ոտքերի ծայրերին է ման գալիս՝ կամացուկ, զգույշ: Ու այդպես հուշիկ քայլերով էլ մոտենում է գրասեղանին՝ մաքրած խնձորը մատուցում, ջուր բերում: Միայն թե Նունեն ժամանակ չկորցնի: Անցյալ օրն էլ հայրիկը բարկացավ Նունեի եղբոր՝ Արամի վրա.

— Ինչո՞ւ ես աղմկելով տուն մտնում, Նունեն դասերն է սովորում:

Առավոտները Նունեն ուզում է կաթի գնալ: Բայց տատիկը չի թողնում, ինքն է գնում: Գիտի, որ դա Նունեի համար բակ դուրս գալու պատրվակ է լինելու: Իսկ բակը Նունեին շատ է հրապուրում: Նունեն սեղանին գամված տխրում է, ձանձրանում: Արամը նկատել է, որ քույրը հանրահաշվի գրքի տակ, հսկող աչքերից հեռու, «Արկածային գրադարան» մատենաշարի գրքերն է հերթով թաքցնում ու... մի փոքրիկ հայելի:

Իսկ երբ Արամը փորձում է ձեռք տալ հայրիկի գործիքներին, ինքնուրույն մի բան անել կամ օգնել հայրիկին, բոլորը ծիծաղում են վրան՝ «Ա՜յ քեզ օգնող... թո՜ղ, թո՜ղ, գնա քո գործո՛վ զբաղվիր, դասե՛րդ սովորիր՝ այդքանն էլ հերիք է»: Բայց վեցերորդցի Արամը գիտի, որ եթե տղամարդ է, պիտի գոնե մեխ խփել իմանա: Նրան ո՞վ է թողնում, որ տանը ինքնուրույն մի գործ անի: Նա սովորում է գերազանց: Այդ էլ բավական է, որ ընտանիքի պարծանքը համարվի:

Նունեն էլ որ գերազանցիկ դառնա, ընտանիքի երջանկությունը կամբողջանա... Նրա անելիքը նույնպես միայն սովորելն է: Մի անգամ փորձեց իր համար ձվածեղ պատրաստել՝ չկարողացավ: Արմենը խայտառակվեց, երբ դպրոցում ընկերների հետ կոտրված նստարանները էին նորոգում:

— Ի՞նչ է, տանը ոչ մի գործ չե՞ս անում,— զարմացավ Վահան քեռին՝ հյուսնը,— ի՛նչ անշնորհք ես: Ես քո տարիքին...

Տատիկն էլ է սիրում ասել. «Ես ձեր հասակում...» Բայց հայրիկին, մայրիկին հետևելով, պահանջում է.

— Դուք ձեր դասե՛րը սովորեք, ձեզանից ուրիշ բան չենք ուզում:

Սխալ են վարվում տատիկը, հայրիկն ու մայրիկը: Բայց այդ սխալի մեղքը արդյո՞ք միայն նրանցն է: Մեղավոր չե՞ն Նունեն և Արամը: Եթե այո, կարո՞ղ եք ասել, թե ինչո՞ւ:

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

ԳԵՎՈՐԳ ԱԲԳԱՐՅԱՆ




Երևանի հյուսիսում, բարձունքի վրա տիրաբար բազմած է անմահ Մաշտոցի անունը կրող Մատենադարանի ամրոցատիպ բազալտե շենքը: Այստեղ հավաքված են հազար-հազարավոր գրիչների ձեռքով գրված մագաղաթյա մատյաններ: Եթե դրանք չլինեին, մենք այսօր ոչինչ չէինք իմանա նաև 700 տարի առաջ Հայաստան աշխարհում գործող կրթական օջախի՝ Գլաձորի համալսարանի մասին: Չեն պահպանվել համալսարանի շինության ո՛չ լսարանները, ո՛չ գրադարանը և ո՛չ էլ նույնիսկ համալսարանի հիմնադիրների գերեզմանները: Եվ միայն Մատենադարանում պահվող մատյաններից է մեզ հայտնի միջնադարյան Հայաստանի այդ նշանավոր բարձրագույն դպրոցի պատմությունը:

Համալսարանի հասակակից Վարդան Վարդապետը («վարդապետ» էին կոչվում ուսուցիչներն ու գիտնականները) գրել է «Աշխարհացույց», այսինքն՝ «Աշխարհագրություն» կոչվող մի գիրք, որը մեզ է հասել գրիչների ընդօրինակած մատյանների շնորհիվ: Հեղինակի ձեռքով գրված օրինակը կորել է: Այդ գրքից ընդօրինակված ձեռագրից իմանում ենք, որ Եղեգնաձորի Գլաձոր կոչվող վայրում Վարդան Վարդապետի օրոք գործել է մի բարձրագույն դպրոց, որտեղ սովորել և դասավանդել են «սուրբ» վարդապետները: «Սուրբ» բառը Վարդանի «Աշխարհացույցում» նշանակում է մաքուր վարքի տեր մարդ: Այդ բառով մեծարվում էին շատ նշանավոր մարդիկ: Ուրեմն Գլաձորի համալսարանի դասախոսները եղել են նշանավոր գիտնականներ, համալսարանն էլ՝ գիտության նշանավոր օջախ:

Գրիչների արտագրած մատյաններից բոլորը չէ, որ մեզ են հասել և մեզ հասածներից էլ բոլորը չէ, որ պահվում է Մատենադարանում: Ուստի մտովի տեղափոխվենք Լոնդոն և հռչակավոր Բրիտանական թանգարանում պահվող հարյուրավոր հայկական ձեռագրերի մեջ որոնենք Գլաձորի համալսարանի սան Կերիոնի արտագրած մատյանը: Այս ձեռագրում Գլաձորի համալսարանը կոչված է հենց համալսարան: Աշխարհաբար վերա-

շարադրելով ծանոթանանք Ներիոնի գրածին. «Այս մատյանը գրվեց հայկական տոմարի ՉՀ թվականին (1321 թ. — Գ. Ա.), դառն և անբարի մի այնպիսի ժամանակ, երբ ամբողջ Հայաստանին և Վրաստանին բռնակալությամբ տիրում էին նետ-աղեղավորները (մոնղոլական հրոսակները — Գ. Ա.)... Գրվեց Գլաձորի հռչակավոր և սուրբ համալսարանում, պանդուխտ ուսանող Ներիոնի ձեռքով, քաջ հռետորներ Դավթի և Եսայու դասախոսության տարիներին»:

Ընդամենը մի քանի տողից բաղկացած սույն հիշատակությունից իմանում ենք Գլաձորի համալսարանի գրեթե ողջ պատմությունը: Նախ՝ Ներիոնի արտագրած ձեռագիրն ինքնին ցույց է տալիս, որ համալսարանում ոչ միայն սովորել են, այլև գրքեր են արտագրել: Իսկ սա նշանակում է՝ համալսարանին կից գոյություն է ունեցել գրչատուն, գրադարան: Այնուհետև իմանում ենք, որ համալսարանը գործել է մոնղոլական բռնակալության տարիներին: Իմանում ենք նաև, որ Ներիոնը «Տարաշխարհիկ» է, այսինքն՝ պանդուխտ: Նշանակում է համալսարանում սովորում էին նաև հեռավոր վայրերից եկած ուսանողներ: Գլաձորում գրված մյուս ձեռագրերից հայտնի է, որ համալսարան են եկել նաև Կիլիկիայից:

Գլաձորի համալսարանի համբավը հասած է եղել նաև Փարիզ: 1958 թվականին ֆրանսիացի գիտնականներ Մարիեսը և Մերսին ֆրանսերեն թարգմանությամբ հրատարակել են 5-րդ դարի հայ փիլիսոփա Եզնիկ Կողբացու աշխատությունը, որը մեզ է հասել Գլաձորի համալսարանի հիմնադիրներ Ներսես Մշեցու և Եսայի Նչեցու պատվերով ընդօրինակված մի ձեռագրում: Լուսեր անունով գրչի ձեռքով 1280 թ. ընդօրինակված այս մատյանն այժմ պահվում է Մաշտոցի անվան Մատենադարանում:

Մատենադարանում են պահվում նաև Գլաձորի համալսարանի որոշ դասագրքեր, որոնցով սովորել են ուսանողները: Այդ գրքերն ուշադիր ուսումնասիրելով, այժմ գիտնականները պարզել են, որ համալսարանում դասավանդվել են գրեթե այն բոլոր առարկաները, որոնք դասավանդվել են նաև միջնադարյան Եվրոպայի (Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և այլ երկրների) համալսարաններում: Այսինքն՝ աստղաբաշխություն, բժշկություն, երաժշտություն, մաթեմատիկա, նկարչություն, պատմություն, փիլիսոփայություն և այլն: Իբրև դասագիրք օգտագործվել են նաև համալսարանի դասախոսներ Եսայի Նչեցու, Հովհաննես Երզնկացու և այլոց աշխատությունները, ինչպես նաև հայ և օտարազգի բազմաթիվ այլ գիտնականների (Արիստոտել, Պլատոն, Մովսես Խորենացի, Անանիա Շիրակացի, Գրիգոր Մագիստրոս և ուրիշներ) երկերը: Համալսարանը գործել է 1282—1338 թվականներին: Այնուհետև տեղափոխվել է այլ վայրեր: Ունեցել է մոտ 20 դասախոս և 360 շրջանավարտ, որոնք համալսարանն ավարտելուց հետո ստացել են վարդապետական կոչում: Ուսման տևողությունը եղել է 7—8 տարի: Համալսարանը հիմնվել է Եղեգնաձորի շրջանի Վերնաշեն գյուղից մոտավորապես հինգ-վեց կիլոմետր հեռու, Պռոշյանների իշխանական տան և Սյունյաց եպիսկոպոսության միջոցներով և հովանավորությամբ: Նշանավոր շրջանավարտներից են Գրիգորիս և Հովհաննես Երզնկացիները, Հովհան Որոտնեցին, Հովհաննես Արճիշեցին, Մխիթար Երզնկացին և ուրիշներ: Գլաձորի համալսարանում նկարազարդված, այժմ Մատենադարանում պահվող ձեռագրերի մանրանկարները ցույց են տալիս, որ ուսանողները հմուտ են եղել միաժամանակ և՛ ճարտարապետության, և՛ քանդակագործության, և՛ մանրանկարչության մեջ: Այդ ուսանողներից են Թորոս Տարոնացին, Հովհաննեսը, Ավագը, Մատթեոսը և ուրիշներ:

Գլաձորի համալսարանի 700-ամյակն այս տարի տոնվում է Միացյալ Ազգերի Կազմակերպությանը կից կրթության, գիտության և մշակույթի մասնաճյուղի (ՅՈՒՆԵՍԿՕ) որոշմամբ, համաշխարհային մասշտաբով: Աշխարհի տարբեր կողմերում տարբեր լեզուներով հնչում է Գլաձորի անունը, տպագրվում են համալսարանին նվիրված հոդվածներ, գրքեր, հրատարակվում են համալսարանի ժամանակակիցների երկերը:

700 տարի առաջ մեր երկիրը ներխուժած նետ-աղեղավորներն իրենց արձակած նետերով խոցոտեցին հայոց երկնակամարը, փորձեցին ծածկել արևի երեսը և խավարի մեջ թաղել հայ ժողովրդին: Բայց Գլաձորի կամարների տակ մագաղաթների վրա շարժվող եղեգնյա գրիչները սև նետերից ավելի զորավոր եղան, ցրեցին խավարը և լույս տարածեցին մեր աշխարհում: Փա՛ռք նրանց հիշատակին:

# ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆԸ

*Հէյ, Հայաստան,*

*[illegible]*

*[illegible]*

*[illegible]*

*[illegible]*

*[illegible]*

*[illegible]*

*[illegible] 1.40. [illegible]*



Այս տարի հայ ժողովուրդը եղբայրական ժողովուրդների հետ միասին, միութենական մասշտաբով տոնեց հայ նոր գրականության հիմնադիր ու մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի ծննդյան 175-ամյակը: Հանդեսներ տեղի ունեցան Հայաստանում, մայրաքաղաք Մոսկվայում, Տարտուում, ուր կրթություն էր ստացել նա:

Մեկ անգամ ևս այցելեցեք Աբովյանի տուն-թանգարանը և դիտեցեք...



Խ. Աբովյանի տուն-թանգարանը:
Թանգարանի ցուցասրահը:
Օրորոցը:
Աբովյանների տան հյուրասենյակը:
Նրա ժամանակների կենցաղում օգտագործված իրերից:

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 18. ՔԱՐԱՅԾԻ ՄԵԾ ՎԻՀՈՒՄ

Մեր մեքենան դուրս եկավ խճուղուց ու քարքարոտ լանջերով խորանում էր լեռների ծալքերի մեջ: Մենք թափքում փոշի կուլ տալով լսում էինք Մագիլի պատմածը:

— Սրանից մի տասնհինգ-քսան տարի առաջ Շիշ քարի մոտ մի մեծ քարայծ վիրավորեցի, արյուն տալով փախավ: Հետքով գնացի-գնացի, մեկ էլ տեսա, որ քարայծն ընկած է մի սև անցքի առաջ: Անցքից գոլորշի էր դուրս գալիս: Հոգիս փառավորվեց, որ որսս տեսա: Հա՛յ-հա՜յ,— ասացի,— ուրեմն քարայծն այս անցքի տեղը վաղուց գիտեր: Ի՞նչ իմանաս, թե ցուրտ օրերին քանի անգամ է հոտն առաջնորդել այդտեղ՝ գետնի տակից դուրս եկող գոլորշիների մեջ տաքանալու: Ես մի քար գցեցի անցքի մեջ, զրնգալով գնաց-կորավ: Անցքի տեղը մինչև հիմա ոչ մեկին չեմ ասել, մտածում էի՝ հանկարծ փորձանք կարող են բերել իրենց գլխին:

Որսորդի պատմածն ալեկոծեց մեզ: Ձմռանը տաք գոլորշու դուրս գալն արդեն հուշում էր, որ ներսում մեծ տարածություններ կան:

Ու մինչ մենք արդեն մտովի վիհի մոտ էինք, Մագիլը մեքենան կանգնեցրեց դեղին սարալանջին: Սարալանջի հողն անբան այրված էր, վառված քարերից բացի ուրիշ բան չկար:

Մեքենայից իջանք ու ճանապարհը շարունակեցինք հեղեղատի չորացած հունով: Առջևում մի վիթխարի ժայռ էր բարձրանում՝ ասես հսկա շիշ լիներ: Շիշ քարն էր: Մագիլը ձեռքը մեկնեց դեպի ժայռն ու ասաց.

— Նրա լանջերին է, բայց տեղն արդեն մոռացել եմ, ման եկեք, կգտնեք:

Մենք ցրվեցինք ու լանջը խուզարկելով բարձրացանք վերև: Անցքը չկար: Հանկարծ իմ հայացքը կանգ առավ մի փոքրիկ ժայռի վրա, որի առջևում բնազդով զգացի հարթակի գոյությունը: Քայլերս ուղղեցի դեպի ժայռն ու հենց նրա ստորոտում տեսա հնին տվող անցքը: Վիհը գտնված էր: Ուրախացած ձայն տվեցի լանջով մեկ ցրվածներին: Քիչ հետո նրանք, ապա նաև որսորդ Մագիլը, հավաքվեցին վիհի առջև:

— Ա՛յ այստեղ էր ընկած քարայծը,— ցույց տվեց Մագիլը վիհի առջևի փոքրիկ հարթակն ու շարունակեց,— ձմեռը ներսից որ տաք օդը դուրս է գալիս, այստեղ շրջակա կանաչը ծլում է: Ամենասուժեղ ցրտին էլ այստեղ տաք է: Այս ձորերում ինչքան կաքավ կա, գալիս է այստեղ տաքանալու և խոտ արածելու: Որսորդի համար սրանից լավ տեղ չկա,— հոգոց քաշելով վերջացրեց Մագիլը, որին Վայոց ձորում գործող օրենքը վաղուց արդեն այստեղ որս անելն արգելել էր:

Վիհի մուտքը նման էր ժայռի մեջ բաց-

ված դուաճ, որը, սակայն, մի քիչ խորանա-լով, փոխվում էր անդունդի: Այնտեղից սառնություն էր փչում: Մի տեսակ նման չէր ո՛չ Զրնգանին, ո՛չ էլ մեզ ծանոթ ու-րիշ վիհերին:

Տեսնես ո՞ւր է իջնում վիհը, դեռ մնո՞ւմ է այն ստորերկրյա ուղին, որով վիհի հա-տակին հավաքված ջրերը հոսել են հեռ-վում արծաթե գոտու նման փայլփլող Ար-փայի մեջ:

— Սրա ներքևում աղավնիներ են ապ-րում,— հաղորդեց Մագիլը:

— Ինչպե՞ս թե աղավնիներ,— չհավա-տացինք մենք մեր ականջներին:

— Հիմա կտեսնեք,—Մագիլը գետնից մի մեծ քար վերցնելով, գլխարկը հանեց,— տեսեք, թե քանի աղավնի եմ բռնում:

Ու քարը գցեց վիհը: Պատից պատ թռն-չելով քարը ցած էր սուրում, իսկ նրա արձագանքը ահռելի դղրդոցով ու աղմու-կով վեր էր մագլցում վիհի խորքերից:

Քարի աղմուկը դեռ չէր մարել, երբ վի-հը դղրդաց անհամար թևաբախումից. վի-հի սև խորքերից վեր սլացան բազում աղավնիներ: Մագիլը ցատկեց վիհի եզրն ու որսորդական մոլուցքով բռնված՝ սկսեց գլխարկը թափահարել, հույս ունենալով նրանով հարվածել աղավնիներին: Ես սարսափահար վեր թռա ու բռնեցի նրա գոտուց, իսկ գետնին նստած Դավիթը ակնթարթորեն շրջվեց ու փաթաթվեց նրա ոտքերին:

— Տեսեք, թե հիմա քանի աղունիկ եմ բռնում,— կանչում էր մոլեգնած որսորդը:

— Հավատում ենք, Մագի՛լ քեռի, միայն թե այս անգամ աղավնիներին, մեր խաթ-րի համար, խնայի՛ր,— աղաչեցինք մենք՝ սարսափած անդունդի եզրին նրա կա-տարած կատաղի ցատկոտուքից:

Նման մի դեպք նկարագրել է Նոսեր Կաստերեն. մի անգամ մայրամուտին նրանց խմբից մեկը մի փոքրիկ քար է գցում քիչ հեռու սևին տվող փոսի մեջ: Անսպասելիորեն քարը զրնգալով իջնում է ցած և մի քանի վայրկյան հետո անց-քից դուրս են պրծնում հարյուրավոր թռ-չուններ: Այդպես հայտնաբերվում է աշ-խարհի ամենախոր վիհերից մեկը:

Ես ականատես եմ եղել մի այսպիսի զարմանալի գիտափորձի. եռակցողի կող-քին կանգնեցրել էին աղավնուն, որը ան-թարթ աչքերով նայում էր կուրացուցիչ լույսին: Նույն հաջողությամբ աղավնին նայում է նաև արևին և կարողանում է առանց կուրանալու ակնթարթորեն վեր սլանալ անձավի խավարից դեպի ցերեկ-վա պայծառ լույսը:

— Դե՛, Մագի՛լ քեռի, վիհը դու ես գտել, դու էլ անունը դիր,— առաջարկե-ցինք մենք:

— Տղերք ջան,— ասաց որսորդը,— որ իրավունքը ինձ եք տալիս, ես էլ իմ սպա-նած քարայծի հիշատակին դնում եմ Քա-րայծի վիհ:

Այդպես անունը դրվեց Քարայծի վիհ, իսկ հետո, երբ նրանից մի քանի հարյուր մետր հեռու մի ուրիշ՝ ավելի նեղ մուտ-քով վիհ գտանք, առաջինը վերանվանե-ցինք Քարայծի Մեծ վիհ, իսկ երկրորդը՝ Քարայծի Փոքր վիհ։

Մեր վերցրած պարանները հերիք էին միայն հիսուն-վաթսուն մետր իջնելու հա-մար: Որոշեցինք համենայնդեպս հետա-խուզել, մեկ էլ տեսար հազիվ այդքան էլ խորություն ունեցավ:

Պարաններից մեկի ծայրը կապեցինք մոտակա եղնուց ու փաթ տվինք ան-դունդի եզրին սեպված ժայռաբեկորին: Կարծես թե արդեն դրանից կարելի էր ամրացնել վայրէջքի պարանները, բայց երբ մոտիվի հետևեցինք պարանների ըն-թացքին, տեսանք, որ տեղը անհաջող է: Պարանը կամ կարող էր կտրվել սուր քա-րերին քսվելով, կամ էլ սեպվել ժայռի ճեղքի մեջ: Քարերի սուր եզրը մուրճով փշրեցինք, իսկ ճեղքը խցանեցինք խճի կտորով, և ես պատրաստվեցի վայրէջքի: Վզիցս կախեցի լապտերը, սուլիչն ու ա-պահովության համար կապվեցի երկու պարաններով. ո՞վ գիտե, թե այդ ան-հայտ անդունդը ինչ անակնկալներ կարող է մատուցել: Սաղավարտը դնելիս մարմ-նովս մի անուշ դող անցավ՝ անհայտու-թյունն էր կանչում:

Մոտեցա անդունդի եզրին ու գեղեցկու-թյան մրցույթին մասնակցողի նման կանգ-նեցի «հանդիսականների» առաջ: Խմբի փորձված ալպինիստները հերթով մոտե-ցան ու հանդերձանքս ստուգեցին: «Ալ-պինիստները միայն մի անգամ են սխալ-վում»,— ասում են ալպինիստները, զգո-նության կոչելով իրենց: Նույնը նաև քա-րայրախուզությանն է վերաբերվում:

Մեր դանդաղ ու զգույշ շարժումներին հետևող Մագիլն իր պարտքը համարեց վերջում մոտենալ ու ստուգել պարանների բարդ հանգույցները, որոնցից, իհարկե, ոչ մի բան չէր հասկանում:

— Ապահովումը պատրա՞ստ է,— հարց-րի ես:

— Պատրաստ է,— համերաշխ պատասխանեցին Վարդանն ու Հովիկը, մի վերջին անգամ հայացքով ստուգելով պարանների դիրքը։

— Գնացի՜նք, հայե՛ր,— կանչեցի ես ու, անդունդի եզրից կախվելով, իջա խավար անհայտություն։

Ես, ձեռքերս բաց թողնելով, մի պահ օրորվեցի օդում, որսացի ընկերներիս անհանգիստ հայացքները ու սուզվեցի մթության մեջ։ Աշխարհը մի ակնթարթում նեղացավ. ինձ համար գոյություն ուներ միայն ճնշվող խավարը և վերևից իջնող լույսի նեղ փունջը, որից ջոկվում էին սպիտակ պարանները, ասես լույսն ու խավարը կապելով իրար։ Վերևում՝ պարաններով անդունդի եզրին կառչած Դավթի համար աշխարհը դարձավ մի ձայն, որ ժամանակ առ ժամանակ գալիս էր անդունդի խորքից, իսկ մնացածների համար աշխարհը պարան էր, որ մետր առ մետր չքանում էր անդունդի խորքում։

Շուրջը լռություն էր, որը ժամանակ առ ժամանակ խզվում էր իմ կանչից.

— Արա՛գ իջեցրեք։

— Արա՛գ իջեցրեք,— անդունդի խորքերից եկող խլացած ձայնս վերև էր հասցնում Դավիթը։

— Արագացրու,— ոգևորում էին իրար, ու ես ավելի արագ էի սուզվում անդունդը։

Վերջապես ոտքերս ինչ-որ բան շոշափեցին։ Քար էր։ Արդյո՞ք վիհի կոկորդի մեջ անխռով նստած «խցան» էր, թե մի խարխուլ քար, որն առասպելական վիշապի նման բերանը բացած սպասում է իր զոհին, որ անդունդը գլորի ու ինքն էլ նրա հետևից գլխիվայր ցած նետվի։

— Պարանը պահե՛ք,— կանչեցի ես։

— Պահա՛ծ է,— եկավ վերևից վստահ պատասխանը։

Ոտքերով շոշափեցի քարը։ Հիմա եթե փլվի էլ, կմնամ օդում կախված։

— Մի կես մետր պարան տվեք,— հանգըստացած կանչեցի ես ու զգացի, թե ինչպես ինձ օդում պահող պարանը թուլացավ։

Ես ամբողջ ծանրությամբ կանգնեցի քարի վրա ու ոտքերս չռած աշխատեցի շարժել այն։ Չշարժվեց։ Հանգստացած շունչ քաշեցի ու լապտերի լույսով զննեցի շուրջս։

Ես կանգնած էի սեղանի մեծության մի մեծ քարի վրա։ Քարը երկու ծայրով նըստած էր վիհի կոկորդում, իսկ նրա երկու կողմերում անհատակ անդունդն էր։ Հեռվում երևում էին վիհի երկու պատերը, որ նման էին քամուց ծածանվող լճի մակերեսի։ Երրորդ կողմում լապտերի ճառագայթը խեղդվում էր խավարում։ Իսկ երբ լապտերը թեքեցի դեպի չորրորդ կողմը, ուրախացած սուլեցի. ինձանից ընդամենը մի քանի մետր հեռու խավարից դուրս լողաց փոքրիկ սրահը, որի փոշեպատ հատակը փայլեց լուսնի նման։

Ես անցա քարի և սրահի միջև ընկած անդունդն ու հայտնվեցի սրահում։ Դա մի նեղ, համեստ անձավ էր, նույնիսկ անարժան, որ սրահ կոչվի։ Լույս աշխարհում դրա նմանին ոչ ոք ուշադրություն չի դարձնի, բայց այստեղ նա ուրիշ է։ Ինձ համար նա մայր հողն էր, որի վրա կարելի էր կանգնել ու չվախենալ ցած գլորվելուց կամ փլուզումից։ Մտքովս անմիջապես անցավ, որ դա կլինի մեր միջանկյալ ճամբարը դեպի երկրի խորքերը կատարելիք հետագա ճամփորդությունների ժամանակ։

Բայց իմ հետախուզությունը դեռ չէր ավարտվել, դրա համար նախ պետք էր քարի վրայից ցած գլորել թռչնաղբով ծեփված քարակտորները։ Ես ոտքերով սկսեցի ցած նետել դրանք։ Քարերը թըռան ներքև։ Նրանց դղրդոցը գնալով հեռացավ ու մարեց ցածում, իսկ հետո հանկարծ վիհի խորքերից ծնվեց մի ուրիշ ձայն, որը դղրդոցով մոտեցավ ու մի քանի վայրկյան հետո խլացրեց ինձ իր տագնապահար թփթփոցներով։ Ես դեռ չէի հասցրել ուշքի գալ, երբ գլխիս շուրջը պտույտ կատարելով, վախեցած աղավնին սլացավ դեպի լույս աշխարհ։

Լապտերի լույսը ուղղեցի կրծքիս, մի անգամ էլ նայեցի կապված պարաններին ու ձայն տվեցի վերև.

— Տղե՛րք, պարա՛ն տվեք, իջնում եմ։

Վերևից պարանը թուլացրին, ու ես իմ ծանրության տակ կամաց իջա ցած։ Մի հինգ-տասը րոպե հետո վերևից կանչեցին.

— Մնաց երկո՜ւ մետր պարան։

— Տվե՛ք լրիվ,— պահանջեցի ես ու իջա էլի երկու մետր։

Այլևս իջնելու պարան չկար, թեև վիհը շարունակվում էր։ Ես վզիցս կախված լապտերը պտտեցի օդում. միայն մի կողքիս այն շոշափեց իր օրում լույս չտեսած պատը, մնացածը թաղված էր խավարի մեջ։ Բայց աղավնիների թռիչքի թափից զգացվում էր, որ արևմտյան կողմում պետք է որ վիհը շատ լայն լինի։ Խավար

էր ճաև ցածում: Ես պատից մի կտոր քար պոկեցի ու ցած նետեցի: Քարը գնաց ու կամաց-կամաց նրա զրնգոցը խզվեց: Ես իջել էի մոտ քառասուն մետր, լապտերի ճառագայթը՝ էլի մի քսան մետր, բայց հատակը չկար: Եվ քանի որ վիհը Արփա գետի մակարդակից բարձր էր 120—150 մետր, ուրեմն վիհն էլ կարող էր այդքան խորություն ունենալ:

Համենայնդեպս, խորությունը հարյուր մետրից պակաս չէր: Դա Հայաստանի ամենախոր կարստային վիհն էր:

Պետք էր արդեն վեր բարձրանալ, ուր անհամբեր սպասում էին հետախուզության արդյունքներին: Ես լապտերով մի վերջին անգամ խուզեցի ոտքերիս տակ տարածված խավարը ու կանչեցի.

— Հայե՛ր, պարանը հավաքեք, բարձրանում եմ:

— Մի րոպե սպասի՛ր՝ պարանները ուղղենք,— վերևից լսվեց Դավթի խլացած ձայնը:

— Սպասում եմ,— համաձայնվեցի ես ու աչքերս փակելով՝ մկաններս թուլացրի: Հոգնել էի: Հիմա ժամանակը անցնում է, զգում եմ, որ վաղուց պետք է ինձ բարձրացնեին, բայց ուշանում են: Այդ մտքի հետ մեկ էլ լսվեց Դավթի հուզված ձայնը.

— Պարանը խրվել է ժայռի մեջ, դուրս չի՛ գալիս:

— Երկրո՛րդ պարանով բարձրացրեք,— հուշեցի ես ու զգացի, որ մի մետրի չափ բարձրացա ու կանգնեցի:

— Այս մի պարա՛նն էլ լռվեց,— կանչեց տագնապահար Դավիթը:

Ա՜յ քեզ տհաճ պատմություն: Իզուր չէր, որ հենց սկզբից վախենում էինք այդ փոքրիկ, անփորձ աչքի համար աննկատ ճեղքից: Հիմա պարանները սեպվել են նրա մեջ, ու ես մնացել եմ օդում կախված:

— Է՜յ, հայե՛ր,— կանչեցի ես,— դուք ինձ թողիք երկնքի ու երկրի միջև կախված:

Վերևում լուռ էին: Ես պատկերացնում էի, որ հիմա այնտեղ բոլորը պարանների վրա պրծած փորձում են դրանք ազատել ճեղքից, բայց պարանները տեղի չէին տալիս: Հետո տղաները ինձ պատմեցին, որ պարանները լարվածությունից զրնգում էին: Պարանի զրնգոցը նշան էր, որ ամեն վայրկյան պատրաստ է քարի սուր եզրին քսվելով կտրվել:

Ժամանակն անցնում էր: Իմ անշարժությունից հանգստացած աղավնիները վիհի խորքերից վեր բարձրանալով, ճախրում էին ոտքերիս տակի անտեսանելի ճեղքերում: Մի ուրիշ անգամ ես երևի կհիանայի դրանցով, բայց հիմա դրա ժամանակը չէր, պետք էր դուրս գալ, քանի դեռ ձեռքերիս մեջ ուժ կար:

Վերևից Դավիթը ձայն տվեց.

— Էդի՛կ, հիմա ի՞նչ ես անում:

— Ի՞նչ պիտի անեմ, եթե դուք չեք բարձրացնում, ստիպված պետք է ինքս բարձրանամ,— պատասխանեցի և վերնակաև պահից առաջ ուժերս հավաքելու համար երգեցի.

Զինչ ու զինչ տամ լողվորին, գոմա
գոմա էր,
Զիմ գոտիկ տամ լողվորին, քոմա
քոմա էր:

Որ երգեցի, այլուևս խաղաց։ Պարանից բռնեցի, մտքիս մեջ կանչեցի. «Որտեղ բարակ է, թող այնտեղ էլ կտրվի»,— ու կամաց վեր ձգվեցի: Պարանները դողացին և հիշեցրին, որ կարող են ցած գլորել վերևում՝ սեղանաձև մեծ քարի վրա ընկած քարակտորները: Ինձ մի խնձորի չափն էլ հերիք էր:

Կամաց սողում եմ դեպի լույս աշխարհ: Վերևից պոկվող քարի մանր կտորները չոր թրխկոցով դիպչում էին պատերին ու կորչում անդունդի խորքում: Անփորձանք հասա սեղանաձև քարին: Վերևից կանչեցին.

— Ուշադրությու՛ն, աստիճանը եկավ:

Ես մի կողմ քաշվեցի: Վերևում մի պահ լույսի խրձի մեջ փայլեցին ու կողքիս շրխկացին աստիճանի դյուրալյումինե ներդիրները: Ես կանգնեցի աստիճանների վրա և մի րոպե հետո արդեն վիհի ելքի մոտ էի: Մեծ դժվարությամբ հանեցի ճեղքի մեջ սեպված չարաբաստիկ պարանները ու դուրս եկա վիհից: Հենց որ ոտքս դրեցի հողի վրա, զգացի, թե ինչպես ներսումս մի բան կտրվեց. սոսկալի հոգնել էի ու բերանս ցամաքել էր:

— Ջո՛ւր տվեք, հայե՛ր,— ասացի ես, սրբելով քրտինքս, որը խառնվում էր թափվող անձրևին:

Մեկը մեկնեց տափաշիշը: Ես այն անմիջապես քաշեցի գլուխս, զգալով, թե ամեն կումի հետ ինչպես են վերադառնում ուժերս:

Բոլորը սպասումով էին ինձ նայում: Ես կռացա ու քարի կտորով գետնին գծեցի վիհի մոտավոր կտրվածքը: Դավիթն ասաց.

— Տղերք, հիշո՞ւմ եք, Զրնգան մտնելիս էլ անձրև եկավ: Սա լավ նշան է:

# Մանկության օրեր...

Այս տարի լրացավ արվեստի վաստակավոր գործիչ, հայկական ճարտարապետությանը և քաղաքաշինությանը նվիրված բազմաթիվ աշխատությունների հեղինակ, ճարտարապետության դոկտոր, պրոֆեսոր, Հայաստանի պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության ընկերության հանրապետական խորհրդի նախագահ, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ճարտարապետության ամբիոնի վարիչ Վարազդատ Հարությունյանի ծննդյան 75-ամյակը: Ճանաչված գիտնականն ու մանկավարժը դառն մանկություն է ունեցել: Եղեռնից փրկված նրանց ընտանիքի ողիսականի ու նրա մանկության պատկերները պետք է որ ուսանելի շատ բան պարունակեն մեր օրերի պատանիների ու երիտասարդների համար:

Ստորև տպագրվում է նրա հուշերից մի հատված:



Վ. Հարությունյանը (աջից) իր եղբայրներ Արծրունի և Աղասու հետ Թիֆլիսի որբանոցում (1916 թ.):

## Նոր ափեր

Չեմ հիշում գաղթի որերորդ օրը տանջված ու հոգնաբեկ հասանք Իգդիր, ապա անցանք Վաղարշապատ: Այստեղ էին հասել նաև հայրս, մայրս ու մյուս հարազատներս:

Մեզ՝ երեխաներիս, տեղավորեցին Գևորգյան ճեմարանի կլոր ու մեծ դահլիճում: Ամեն առավոտ մեզ այցելության եկողներր առողջներին պաքսիմատ էին բաժանում, իսկ հիվանդներին առանձնացնում, տանում:

Մի առավոտ էլ մեզանից անջատեցին Գուրգեն եղբորս, որ ամբողջ գիշեր գալարվում էր տենդի մեջ: Տիֆի համաճարակը նրան էլ էր առել իր ճիրանների մեջ:

Գաղթականներով լցված փոքրիկ գյուղաքաղաքի շատ մասնավոր տներում հիվանդանոցներ էին կազմակերպված: Դրանցից մեկում էլ տեղավորել էին Գուրգեն եղբորս: Ավագ եղբորս՝ Արծրունի հետ

երբեմն այցի էինք գնում մեր հիվանդին:
Մի օր էլ պալատ մտանք... ու դատարկ տեսանք հետին պատի մոտ, աջ կողմում դրված այն մահճակալը, որի վրա մեր հիվանդ եղբայրն էր պառկած:
— Մեր Քուրքեն ախպեր դյո՞ր ի,— հարցրինք մենք:
Մի պահ լռություն: Ապա հիվանդներից մեկը պատասխանեց.
— Էդ սավանի մեջ որ տարան, ձեր Գուրգեն ախպերն էր...
Վաղարշապատում մոլեգնում էին համաճարակները, որոնց զոհ էին դառնում վանքի լճին կից անտառակում, բաց երկնքի տակ տեղավորված գաղթականները: Ամեն օր սայլերով քաղաքից դուրս էին բերում վախճանվածներին ու թաղում ընդհանուր գերեզմանոցում:
Հայրս գերագույն ջանքերով ի մի էր հավաքել իր ցրիվ ընտանիքը և դերձակությամբ էր զբաղվում, «բանեցնում» էր իր արհեստը: Նոր կորուստներ չտալու մտահոգությամբ նա անմիջապես մեզ փոխադրեց Թիֆլիս, որտեղ ունեինք հարազատների երկու ընտանիք, որոնք 1896 թ. կոտորածից հետո այդտեղ էին փոխադրվել, տնավորվել:
Բայց ո՞վ կարող էր իր հարկի տակ ընդունել տիֆով հիվանդ բազմանդամ մի ընտանիք: Հորս, մորս, Արծրուն եղբորս և ինձ տեղավորեցին Թիֆլիսում հայտնի Արամյանցի հիվանդանոցում, որը արդեն իսկ լեփ-լեցուն էր կովկասյան ռազմաճակատի վիրավորներով և հիվանդ գաղթականներով:
Այդտեղ էլ տվինք հերթական զոհը: Թիֆլիս փոխադրվելու հաջորդ ամսին՝ սեպտեմբերին վախճանվեց մեր հույսն ու ապավենը, մեր սիրելի հայրը...

# Ծիրանավոր

Այս անունը դարձել է մանկությանս անբաժան մասը: Ծիրանավոր էր կոչվում Թիֆլիսի հայկական վանքերից մեկը, որ տեղավորված էր Օրթաճալայի այգիների մոտերքում՝ լեռան ստորոտին, ձորով անջատված սարահարթի շուրթին: Վանքի ընդարձակ բակի մի կողմում, ձորի երկայնքով ձգվում էր երկհարկանի մի շենք, որ բակի կողմից ուներ ապակեպատ պատշգամբ:
Թիֆլիսի հայ բարեգործական մարմինը այս շենքն էր վարձել ու հատկացրել որբանոցին: Սենյակներում խիտ առ խիտ շարված երկհարկ մահճակալներին տեղավորված էին նույն դառն ճակատագրի տեր 300-ի չափ երեխաներ՝ այդ թվում՝ Սիրանույշ քույրս, Արծրուն եղբայրս և ես:
«Որբ № 204: Տեր-Հարությունյան Վազգեն, Վանից, 7 տարեկան»: Այդպես եմ գրանցված որբանոցի շատ տարիներ հետո հայտնաբերված ցուցակում:
Կիրակի օրերը Ծիրանավոր վանքի բակն ու շրջակա ձորերը լցվում էին ուխտավորներով: Պատերազմի արհավիրքը դեռ լիովին չէր հասել նրանց գիտակցությանը: Ամենուրեք կերուխում էր, պար և երաժշտություն: Զուռնայի ու դհոլի, թառի ու քյամանչայի, Թիֆլիսում այնքան լայն տարածված շարժական երգեհոնի (օրգանի) ձայներից թնդում էին բակն ու ձորը:
Որբերիս սեղանը սկզբի տարիներին առանձնապես հարուստ էր, որովհետև ուխտավորները, մանավանդ հարուստ, նվերներ էին բերում որբանոց՝ մրգեր ու չխարներ, նույնիսկ խոշոր անասուններ և տարբեր-տարբեր ուտեստեղեն:
Բայց երբեմն աղետալի էր վերջանում ուխտագնացությունը: Հիշում եմ, ինչպես Ծիրանավորոբա կոչվող վանքի հերթական տոնին, որ տեղի էր ունենում ամեն տարի ամռանը, կերուխումի ժամանակ կռիվ ծագեց ձորում երկու խմբերի միջև: Այն բորբոքվեց ու տարածվեց՝ ընդգրկելով մի ստվար բազմություն: Սկսեցին գործի դնել մահակներն ու խորովածի շամփուրները, դաշույն ու հրազեն:
Որբանոցի կառավարչուհու՝ տիկ. Եվգինե Ծաքարյանի կարգադրությամբ բոլոր երեխաներին իսկույն հավաքեցին շենքում ու դռները փակեցին: Սենյակների լուսամուտների մոտ կանգնած դիտում էինք այդ աղետալի իրադարձությունը. մի կատարյալ պատերազմ, որը բավականին երկար տևեց, պատճառելով շատ զոհեր:
Երբ ոստիկանները քաղաքի հեռավոր արվարձաններում գտնվող այս վայրը հասան, ձորն արդեն լիքն էր վիրավորներով և սպանվածներով: Տեղավորելով սայլերին և կառքերին, նրանց քաղաք փոխադրեցին:
— Է՞ս էլ քեզ Ծիրանավորոբա,— բացականչեց մեր կողքին կանգնած Գեոր-

գին՝ որբանոցի պահակը,— տարի չի լինում, որ արյունով չվերջանա Միրանավորոբան:

Հերթական մի կիրակի օր նորից ուխտավորներով լցվել էր վանքի բակն ու շրջակայքը: Այս ու այն կողմ բացվել էին սեղաններ, խորովածի բուրմունքն ու օջախների ծուխը միախառնված տարածվել էին ամենուրեք: Ուրախ բացականչություններից ու զուռնի ձենից դղրդում էր ձորը:

Ջրի հանդիպակաց լանջի ժայռի ծայրին նստած էր մի մարդ՝ կտավակալն առջևը: Հասկացա, որ նկարիչ է: Ինկույն ձորն իջա, որը լեցուն էր կերուխումով տարված ուխտավորներով, և դժվարությամբ հասա նրա մոտ, կողքին նստեցի և ուշադիր հետևում էի, թե ինչպես է վրձնի արագ ու վարժ հարվածներով կըտավի վրա հետզհետե ուրվագծվում վանքի համայնապատկերը: Սա իմ երկրորդ հրապուրանքն էր նկարչությամբ: Ոչ բարով հրապուրվեի, քիչ մնաց, որ աղետով վերջանար նկարչի ու ինձ համար...

— Ա՜յ տղա, էդ քարը մոտեցրու, դնեմ ոտքիս տակը,— դիմեց ինձ նկարիչը (մինչև հիմա էլ չգիտեմ, թե ով էր նա, ինչ էր անունը, ազգանունը): Ինկույն ջանասիրաբար վերցրի քարը, բայց... ծանր էր և ձեռքիցս ընկավ ու սկսեց գըլորվել դեպի ձորեզրը: Սարսափով դիտում էինք, բայց չէինք կարող կասեցնել քարի ընթացքը...

Սթափվեցինք ու այլայլվեցինք, երբ ձորից մեզ հասան փշրված ափսեների զրնգոցը, քեֆչիների գոռում-գոչյունը, ատրճանակի կրակոցներ...

— Վա՜յ, էդ ի՞նչ արիր, ա՜յ հիմար, դե շուտ, փախչե՛նք այստեղից,— շշնջաց նկարիչը՝ գունատված ու, հավաքելով իր նկարչական պիտույքները, հեռացավ թաքնվելու ձորի ծալքերում: Ես ահաբեկված հետևեցի նրա օրինակին և զարտուղի ճանապարհներով մի կերպ հասա որբանոցի բակը:

Այսպես ավարտվեց իմ հերթական հրապուրանքը նկարչությամբ:

Ամռան ամիսներին երբեմն որբերով իջնում էինք ձորը, հասնում ջրվեժին, տակը լողանում, մանկական զրնգուն ճիչերով լցնում գեղատեսիլ հովիտը: Ուր էլ լինեինք, Արծրուն եղբայրս մեզ հետ էր, օգնում էր բարձրանալ կամ իջնել դժվարին տեղերով, երբեմն ինձ իր ուսին դրած:

Հիշողությանս մեջ են մնացել որբանոցի պատշգամբում (որը նաև մեր ճաշարահն էր) կազմակերպվող գրական-գեղարվեստական ցերեկույթները կամ երեկույթները: Ասում են (բայց ես չեմ հիշում), որ մի անգամ ներկա է եղել Հովհաննես Թումանյանը: Ցերեկույթներից մեկի ժամանակ ինձ էլ վիճակվեց ելույթ ունենալ.

Գորտը գորտին կանչում է,
Քեռին մեռե՜լ է, քեռին մեռե՜լ է,
Ղո՞րթ, ղո՞րթ, ղո՞րթ...

արտասանեցի ես շտապ, շփոթ ու կասկարմիր իջա աթոռից: Ծափերն ու քրքիջը միախառնվեցին:

Ինձնից հետո աթոռին բարձրացավ ուրիշ մեկը ու կատարեց այն տարիներին այնքան տարածված «Կռունկը».

Թողել եմ ու եկել մըլքերս ու այգիս,
Քանի որ ախ կանեմ, կը քաղվի հոգիս,
Կռունկ, պահ մի կացիր, ձայնիկդ ի
հոգիս,
Կռունկ, մեր աշխարհեն խապրիկ մը
չունիս....

Սրտակտուր այս երգը բոլորիս հուզեց, մեր մանուկ հոգին համակեց անլուր տըխրությամբ: Հիշեցի Վանի մեր տունը, մեր այգին:

Հերթական մի երեկույթի ժամանակ հրդեհ ծագեց: Առաստաղից կախված նավթի լամպը իր տաքությամբ այրել էր կախիչի բունը: Լամպը պոկվելով ընկավ փայտաշեն բեմի հատակին, բոց ու ծխով լցնելով պատշգամբը: Առաջացավ անասելի իրարանցում, խուճապ: Երեխաները ահաբեկված, սկսեցին լալ ու կանչել: Հանդիսականների միջից մեր դաստիարակ Կիրակոս Երիցյանը (բանաստեղծ Վաղարշակ Նորենցի ավագ եղբայրը), տեղից վեր կացավ, համարձակ մոտեցավ բեմին ու իր հագից հանելով կաշվե բաճկոնը, արագորեն հանգցրեց կրակը:

Երկրի դրության վատթարացումը աշխարհից կտրված որբերս սկսեցինք զգալ մեր սեղանին դրվող ուտելիքով, սեղանի, որի վրա այլևս չէր մնում անգամ ցամաք հացի փշրանքը: Նախորդ տարիների պես սեղանատուն չէր մտնում որբանոցի խոհարարուհի Արեգնազան մորաքույրը ու հարցնում.

— Բալիկնե՛ր, էսօրվա ճաշը համե՞ղ էր...

Այո, աշխարհը փոխվել էր: Ու գնալով փոխվում էր դեպի ավելի ու ավելի վատը:




Ամեն, ամեն, ամեն տարի
Խեղճ մայրիկը
Կարմրատակած է տուն գալիս.
— Մոտի՛կ արի,
Լսի՞ր, տղա՛ս,
Որոշել են փոխադրել,
Սակայն՝ մի կերպ,
Բայց մինչև ե՞րբ...—
Բարկանում է
Ու չգիտե,
Որ դպրոցում
Հենց «մի կերպ» է իր անունը:
— «Մի կե՛րպ», արի՛ դասդ պատմիր:
— Չես սովորել, նստի՛ր, «մի կե՛րպ»:—
Ուսուցիչը հառաչում է.
— Դու ինչո՞ւ ես քո թշնամին:
Լսի՛ր, «մի կե՛րպ»...—
Աղջիկները ծիծաղում են,
Տղաները ձայնակցում են:
Զանգն հնչում է.
— «Մի կե՛րպ» տղա,
Գնանք խաղանք:—
Բանն հասնում է թե խաղալուն,
Դուք չնայեք
Դասերի մեջ իր կաղալուն.
Այնպես թռչում, այնպես վազում,
Մարդ չի հասնում իր ետևից,
Էլ ինչ դասեր...
Դասեր, դասեր,
Անտեր մնան էդ դասերը...
«Երկուսները», որ դարսել է,
Ուրիշ մի բան պիտի անի՝
Տեղը հանի:
Անցյալ տարի
Մնաց նա նույն
Դասարանում:
— Լավ է,— ասին,—
Նույն գրքերով դպրոց գնաս,
Նորից նստես դու նույն դասին,
Գուցե մի կերպ ետ չմնաս...
Ոչ թե տունը կամ դպրոցը,
Շատ սիրում է նա փողոցը...
Քիչ է մնում
Իրեն խեղդեն էդ դասերը,
Դասե՞ր, դասե՞ր...
Դասի մասին
Ծնողները իր փոխարեն
Կմտածեն, մի բան կանեն:
Կամ կարծում եք,
Դպրոցն ինքը ելք չի՞ գտնի,
Ուզեն-չուզեն,
«Երկուսները» պիտի խուզեն:
Դպրոցը քեզ հարյուր տարի
Չի պահի նույն դասարանում:
Ի՞նչ էլ անես, կհամբերեն,
Կչարչարվեն,
Ելք կգտնեն,
Որ քեզանից
Մի կերպ, մի կերպ
Մարդ դուրս բերեն:

# ԵՐԳԵԼՈՒ ՑԱՆԿՈՒ-ԹՅՈՒՆՍ ՆՄԱՆ Է ԾԱՐԱՎԻ



Ֆրանսիայի հասարակական կարծիքի ինստիտուտը 1966-ին հարցում անցկացրեց. «Ո՞վ է ձեր սիրելի երգչուհին»: Միրեյ Մատյեն ձայների 39 տոկոսը շահեց: Ավինիոնցի քսանամյա աղջիկը գրավեց էստրադային Օլիմպոսը: Ֆրանսիացիներն ասացին, թե «Փարիզի ճնճղուկի» փոխարեն, ինչպես անվանում էին Էդիտ Պիաֆին, դեպի Բուլոնյան անտառ է ճախրել «Ավինիոնի ճնճղուկաձագը»:

1967 թվին Միրեյ Մատյեն «Եվրոպայի երգարվեստի հրաշք» հռչակվեց: Կայծակնային, անսպասելի վերելք, հսկայական հաջողություն: Սա ի՞նչ է: Ստեղծագործական երջանիկ ճակատագի՞ր: Եվ ընդհանրապես, ինչպե՞ս պատահեց, որ ավինիոնցի քարտաշի ընտանիքից ելած համեստ աղջնակը հայտնի դարձավ ամբողջ աշխարհին:

Միրեյ Մատյեն ծնվել է 1946 թվին: Նրա ծնողները սենյակ էին վարձել մի անհրապույր բարաքում: Մատյեների ընտանիքը արագ էր աճում: Միրեյը տասներեք քույր ու եղբայր ուներ: Հայրը գերեզմանաքարեր էր տաշում: Դրանով հնարավոր չէր հարստանալ, մանավանդ եթե այդքան մեծ ընտանիք ունես: Միրեյը երեխաներից ամենամեծն էր և նա, ինչով կարող էր, օգնում էր մորը. գնումներ էր կատարում, աման լվանում, անկողին հավաքում, լվացք անում, փոքրերով զբաղվում: «Մանուկ ժամանակս ես միայն մի անգամ եմ ինձ երջանիկ զգացել, այդ այն օրն էր, երբ առաջին աշխատավարձս ծնողներիս բերեցի: Մեծ գումար չէր, ընդամենը հարյուր ֆրանկ, որը ես աշխատել էի տասնհինգ օրում, բայց որքա՜ն

երջանիկ էի ու որքա՜ն հպարտ»:

Դպրոցում Միրեյը չէր փայլում, հավանաբար, այդ լրացուցիչ բեռնվածության պատճառով: Բայց նա շարունակ երգում էր սալօջախի մոտ ու պարտեզում, եղբայրներին քնեցնելիս ու առավոտյան դպրոց ճանապարհելիս: Ութ տարեկան էր, երբ առաջին անգամ լսեց Էդիտ Պիաֆի երգը:

«Ես հմայված էի: Մայրս այդ պահին նստած էր կարի մեքենայի մոտ: Ես նստեցի նրա ծնկներին ու ասացի. «Մայրի՛կ, որ մեծանամ, ես էլ եմ երգելու»: Հայրս, այս իմանալով, տխուր տարուբերեց գլուխը: Սակայն ես համառ էի ու հաստատակամ: Ամեն անգամ, երբ երգում էր Պիաֆը, լսում էի ու սովորում»:

Տասներկու տարեկան Միրեյը ստիպված եղավ աշխատանքի մտնելու: Մանկությունը, որը փաստորեն գոյություն էլ չէր ունեցել, ավարտվեց: Պետք է օգներ ծնողներին՝ ընտանիքը կերակրելու:

«Մի օր ես հագա լավագույն զգեստս, հայրս ձեռքս բռնեց ու տարավ թղթի գործարան: Նա ինձ ներկայացրեց կադրերի գծով ղեկավարին, և ինձ ընդունեցին որպես օժանդակ բանվոր: Չորս տարի ես կանգնած էի ծրարներ պատրաստող մեքենայի մոտ: Մեկ ժամում պետք է վեց հազար ծրար պատրաստեի»: Ոմանք պնդում են, որ Միրեյ Մաթյեի երկրպագուներն այժմ ողջ Ֆրանսիայում որոնում են այն ծրարները, որոնք մի օր սոսնձել է նա: Բայց դա այժմ, երբ Միրեյ Մաթյեն նշանավոր երգչուհի է: Իսկ այն ժամանակ...

Այն ժամանակ Միրեյ անունով աղջիկը ծրարներ էր սոսնձում ու երգում: Նա անգիր գիտեր իր պաշտելի Էդիտ Պիաֆի բոլոր երգերը: Ժամանակ առ ժամանակ Միրեյը ելույթներ էր ունենում փոքրաթիվ ունկնդիրների առաջ՝ Ավինիոնում: «Երբ ես երգում էի եկեղեցում, հարսանիքներում, բարեգործական երեկույթներին և տանը՝ եղբայրներիս ու քույրերիս համար, ինձ նշանավոր երգչուհի էի երևակայում: Բայց ես համոզված էի, որ երազս չի իրականանա, դրա համար լալիս էի գիշերները: Մենք ապրում էինք Ֆրանսիայի հարավում, Իսկ երգել սովորելու համար պետք էր Փարիզ գնալ: Փող էր պետք...»

Ամեն տարի Ավինիոնում երգի մրցույթ էր տեղի ունենում, որը քաղաքագլխի օգնական Ռայոլ Կոլոմբն էր կազմակերպում: Այդ մրցույթում թույլատրվում էր ելույթ ունենալ նաև ինքնուս երգիչներին: «Երբ արդեն լրացավ տասնյոթս,— հիշում է երգչուհին,— մայրս թույլ տվեց ինձ մասնակցել մրցույթին: Տեսնելով հասարակությանը, ես կարկամեցի, մի բան ճնշեց կոկորդս: Վատ երգեցի, թեև երրորդ տեղն էի գրավել, և խուճապահար փախա բեմից»:

Ի դեպ, դա դեպի մեծ հաջողությունը տանող փուլ չէր: Փարիզից հեռու գտնվող գավառում նվաճած մրցանակը քիչ բան էր նշանակում:

Միրեյի առջև հարց ծառացավ, թե այնուհետև ի՞նչ պիտի աներ: Ստույգ միայն մի բան գիտեր. ուզում էր երգել, դա էր պահանջում նրա ողջ էությունը:

«Երբեք չեմ մոռանա այն օրը, երբ տեղի ունեցան ընտրահանումները «Տելեդիմանշի» համար: 1965 թվի նոյեմբերի 21-ին էր, № 102 ստուդիայում»: Նրան՝ ավինիոնցի տասնինը տարեկան աղջկան, ցուցադրեցին Փարիզի հեռուստատեսությամբ: «Փարիզմատչ» հանդեսը գրեց. «Հեռուստատեսությանը երկու րոպեն էլ բավական էր, որպեսզի մի նոր Պիաֆ հայտնագործեր»:

Մեկ ամիս անց Միրեյ Մաթյեն արդեն ելույթներ էր ունենում Փարիզի «Օլիմպիա» նշանավոր դահլիճում: Նրա վերաալացքը Մոխրոտի հեքիաթն է հիշեցնում: Սակայն երջանիկ լինելու համար Մոխրոտը միայն պետք է բարի ու գեղեցիկ լիներ: Իսկ ավինիոնցի երգող Մոխրոտը պետք է սովորեր երգել, սովորեր՝ ամեն բանից զրկելով իրեն...

«Տելե-դիմանշի» երկրորդ հաղորդման ժամանակ, 1965 թվի նոյեմբերի 23-ին, Միրեյ Մաթյեին լսում է շոու-բիզնեսի ամերիկացի խոշոր գործարար Ջոնի Ստարկը, որն այն ժամանակ արդեն փառքի ճանապարհ էր դուրս բերել Ջոնի Հոլիդեյին, Սիլվի Վարդանին, Դալիդային, Ֆրանսուազա Հարդիին:

Թվում է, թե աշխարհում ոչինչ անհետ չի անցնում, բայց ոչինչ էլ ետ չի վերադառնում: Այդ էր պատճառը, որ հրաշք թվաց, երբ Էդիտ Պիաֆի արտասովոր ձայնը կարծես վերածնվեց ավինիոնցի աղջկա մեջ: Ինչպե՜ս էր հուզվել Փարիզը, երբ 1965 թ. նոյեմբերին Միրեյը Պիաֆի պես սև զգեստով կատարեց վախճանված, բայց մարդկանց հիշողությունից չանհետացած «աստղի» երգերը: Ջոնի Ստարկը՝ մի փորձառու բիզնեսմեն, տեսավ, որ թեև երեք տարի է անցել Պիա-

ֆի մահից, նա մնում է Ֆրանսիայի սիրելին։ Ստարկը մտքում դրեց ստեղծել նոր Պիաֆ, որը նվաճել կկարողանա այսօրվա երիտասարդությանը։

Ստարկը հրավիրում է վոկալի, ռիթմիկայի լավագույն դասատուների, Միրեյին սովորեցնում են հագնվել, գրիմ քսել, քայլել, հարցերին պատասխանել և նույնիսկ պատառաքաղ բռնել։ Կյանքը նրան երես չէր տվել, և նա զարմացնում էր բոլորին իր աշխատունակությամբ։ Հյուրախաղերի հենց առաջին ամռանը Միրեյը 70 մենահամերգ տվեց։

Առաջին տարին ավարտվեց բարեհաջող՝ համերգային շրջագայություն, երկու ձայնապնակ։ Արդյունքը՝ 2 միլիոն 500 հազար ֆրանկ։ Հետագայում համագործակցությունը Միրեյի հետ Ստարկին չտեսնված եկամուտ բերեց՝ 300 միլիոն ֆրանկ...

«Գալով անհայտությունից, նա որոշ բանի հասել է։ Բայց ի՞նչ սոսկալի վիճակում է»։ Այս ֆրազը վերաբերում է այն բոլոր մարդկանց, որոնց ընդունակությունները օգտագործվել են հանուն մեծ բիզնեսի»,— գրել է «Յումանիտե-դիմանշը» Միրեյ Մաթյեի շուրջը ստեղծված ռեկլամային աղմուկի առթիվ գրված մի փոքրիկ ռեպլիկում։ Սակայն երգչուհին լարովի տիկնիկ չդարձավ (ինչպես ուրիշ շատերն էին դարձել)։ Գեղեցիկ, արտասովոր տեմբրով օժտված ձայնը, զգացմունքայնությունը, բեմական հմայքը, արտիստիզմը իրոք արժեքավոր հատկություններ են։ Բայց Միրեյին զարդարում են և՛ անդադրում աշխատանքը, և՛ բարձր պահանջկոտությունն իր նկատմամբ։

Միրեյ Մաթյեն չի երգում միայն մի դեպքում՝ երբ քնած է։ Այն հարցին, թե՝ «Ի՞նչն եք ցանկանում ամենից ավելի, այժմ, ձեր փառքի գագաթնակետին», նա պատասխանել է. «Ուզում եմ հավատալ, որ գագաթնակետում չեմ։ Ես վախենում եմ գագաթնակետից։ Ինձ թվում է, որ իմ մեջ, այստեղ,— և նա իր թեթև ձեռնափերր կրծքին է սեղմում,— շատ բան կա, որ ես դեռ չեմ երգել։ Չեմ հասցրել կամ չեմ կարողացել։ Եվ այդ պատճառով միայն մի բան եմ ուզում՝ երգել։ Որ առողջություն և ուժ ունենամ երգելու։ Որ ձայնս չլքի ինձ։ Երգելու ցանկությունս նման է ծարավի»։

... Փոքրամարմին Միրեյ Մաթյեն (հասակը՝ 153 սանտիմետր) միկրոֆոնին է մոտենում մանկական՝ երեսուներկու համարի կոշիկներով և հպարտ ետ է գցում գլուխը։ Նա երգում է սիրո, հույզի, քնքշության մասին։ «Սերը մերված է աշխարհին, բայց անձայն է։ Այն պահերին, երբ ես սիրո երգեր եմ երգում, ես ինքս ինձ նրա ձայնն եմ թվում։ Յուրաքանչյուր երգի սյուժե ես նորից ու նորից եմ վերապրում։ Կարծես ինքս եմ սիրում ու հմայվում, կարծես ինքս եմ փլուզում ապրում։ Եվ չի եղել պահ, որ ինձ չթվա, թե ես իմ մասին եմ երգում։ Ես սիրում եմ այդ երգերը»։

«Իմ երգացանկում Պոլ Մորիայի մի երգ կա Բոնների խոսքերով. «Ե՞րբ է լուսաբացը, ընկեր»։ Ես շատ եմ սիրում այդ երգը, այն Ռուսաստանի Հոկտեմբերյան հեղափոխության մասին է։ Իմ ստեղծագործությամբ ես փառաբանում եմ Փարիզի ազատագրումը հիտլերականներից՝ ֆաշիստներից, ես երգել ու երգում եմ բարեկամության երգեր։ Եվ, իհարկե, իմ երգացանկում շատ են Էդիտ Պիաֆի երգերը»։ Միրեյի ձայնն ու արտաքինը կարող են մղել Պիաֆի հետ համեմատություն կատարելուն։ Բայց ոչ։ Մաթյեն մեծ երգչուհու ստվերը չէ։ Ավինիոնցի աղջիկը վառ անհատականություն է։ Այն հարցին, թե արդյո՞ք նա իրեն զգում է Էդիտ Պիաֆի հետնորդ, Միրեյը պատասխանել է. «Պիաֆն անհասանելի է։ Իսկ ես ուղղակի Միրեյ Մաթյեն եմ»։

1967 թվի մայիսին Միրեյ Մաթյեն առաջին անգամ համերգներով այցելեց Սովետական Միություն։ Նա նավաստիների համար երգեց «Ավրորա» լեգենդար հածանավի տախտակամածին։ Երգեց «Ընկեր», «Հոկտեմբեր», Փարիզի ազատագրման մասին երգերը։

Նրա կատարման մեջ չկա ավելորդ հուզականություն։ Այլ կա զգացմունքի հագեցվածություն։ Ինչ էլ որ երգում է, մըշտապես ստեղծում է տրամադրություն։ Ահա Միրեյը «Մարսելիոզ» է երգում, և դահլիճը սկսում է ձայնակցել նրան...

Միրեյ Մաթյեն՝ «Փարիզի այդ նոր ճնճղուկաձագը», անձնավորում է Ֆրանսիան։ Նրա ձայնն իսկույն ճանաչվում է հազարավոր այլ ձայների մեջ։ Եվ երբ այդ ձայնը դուրս է նետվում պատահական մի ընդունիչից, հնչում հեռուստատեսային էկրանից կամ տոն օրով տարածվում քաղաքով մեկ, ակնթարթորեն մեր աչքի առաջ հառնում են Ֆրանսիան ու գլուխը հպարտորեն ետ գցած նրբակազմ աղջիկը։



ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

# ԹԱԳԱՎՈՐՆ ՈՒ ՓԻԼԻՍՈՓԱՆ

Չգիտեմ ո՞ր թագավորը պրուսական
Եվ իր երկրի հռչակավոր փիլիսոփան
Որոշեցին նավակ նստել,
Քիչ զրուցել ու զբոսնել:
Բայց ծով հասան
Ու ի՜նչ տեսան.
Երկինքն ամպել, սկսվել է վատ եղանակ,
Փիլիսոփան հրաժարվեց նստել նավակ:
— Ահա թե ի՜նչ... — ծաղրեց արքան,—
Մի՞թե վախկոտ եք դուք այդքան:
Իսկ ես երկյուղ չունեմ նույնիսկ մահից,
Թեև զրկվեմ պիտի թագից, գանձ ու գահից:
— Բնական է,— վրա բերեց փիլիսոփան,—
Ձեր թագը ում գլխին դնեն,
Նա կդառնա երկրի արքան:
Իսկ իմ գանձը իմ հոգու մեջ է պահ տրված,
Ու չեմ կարող մեկ ուրիշի այն կտակել:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

## ՆՈՐԱՎԱՆՔ

Արփայի ձախ ափին՝ Արենի գյուղի մոտ, նույն անունը կրող եկեղեցին է։ Սլացիկ, ուղղահայաց ռիթմով գահավիժող ժայռի ֆոնին ուրվագծվում է եկեղեցու սպիտակ ու նուրբ պատկերը։ Ավանդությունը պատմում է, որ ինչ որ ժամանակ այս կողմերում հայոց զորքը պաշարված է եղել թշնամու հզոր բանակով։ Տեղացի մի քաջասիրտ հայուհի շաբաթներ շարունակ իր սև նժույգը հեծած, մութ գիշերներին կտրել անցել է թշնամու զորքի վտանգավոր գոտին և ուտելիք մատակարարել պաշարված զինվորներին։ Եվ ահա, մի անգամ, շատ խավար մի գիշեր կինը ջահ է վառել, և թշնամու ամբողջ զորքն ընկել է նրա ետևից։ Կինը շատ լավ է իմացել տեղանքը ու իր սև նժույգը հեծած, ջահը ձեռքում բարձր պահած, սրընթաց արշավել է դեպի անհատակ վիհը, իր հետ կործանելով թշնամու ողջ բանակը։ Այդ տեղում երախտագետ հայրենակիցները եկեղեցի են կառուցել և անձնազոհ հայուհու անունով Արենի անվանել։

Արենիից դեպի արևելք մոտ 8 կմ հեռավորության վրա, Ամաղու գյուղի մոտ Նորավանքն է, մեր միջնադարյան ճարտարապետության ամենանշանավոր հուշարձանախմբերից մեկը։ Նորավանք կարելի է հասնել նաև Արենիից վեր, Արփայի կիրճի մեջ բացվող նեղ ու խոր Ամաղուի կիրճով։ Արփայից մինչև Նորավանք կիրճն այնքան նեղ է ու վայրի, որ նույնիսկ մի վրանի համար անհրաժեշտ հարթ տեղ չկա։ Եվ միայն Նորավանքի

մոտ կիրճիափերը բացվում, լայնանում են: Այստեղ, կիրճի բարձրության կեսերում մի փոքր հարթության վրա պարըսպապատ, հանդիսավոր ու շքեղ հանգըրվանել է Նորավանքը: Ապառներում գոյություն ունեցող երկաթի օքսիդն ամբողջ ձորը ներկել է արևմուտքի տաք կարմիր գույնով: Վանքի բոլոր շինությունները, պարիսպն ու առհասարակ ամեն ինչ շըրջակայքում ունեն նույն կարմրավուն գունավորումը:

Մայրամուտն այստեղ կախարդական է: Ցերեկային բոլոր երանգները չքվում են: Միայն կտրուկ սահմանագծով իրար վանելով ու խույս տալով, և սակայն մշտական հարևանությամբ, աչք են շլացնում կարմիրն ու սևը: Հեքիաթային պահ... Փոքր-ինչ հետո գույները մռայլվում են, ու ամեն ինչ կորչում է խավարում: Իսկ առավոտյան, նոր ծագող արևից շառագունած՝ հառնում է պերճորեն զարդարված Նորավանքը:

Հուշարձանախմբի մեջ են մտնում 13-րդ դարում սրբատաշ քարով կառուցված ս. Կարապետ գմբեթավոր եկեղեցին, 1261 թ. Օրբելյան տոհմի նշանավոր իշխան Սմբատի շինած գավիթը, որը նաև տոհմի տապանատունն էր (այստեղ պահպանվել են սպիտակ քարից և մարմարից հազվագյուտ նրբության շիրմաքարեր), այնուհետև 1275 թ. ճարտարապետ Սիրանեսի կառուցած դամբարանատունը և, վերջապես, ս. Աստվածածին երկհարկանի դամբարան-եկեղեցին, որ 1339 թ. կառուցել է Մոմիկը: Դա Մոմիկի վերջին և ամենանշանավոր ստեղծագործությունն է: Հայոց ճարտարապետությունն այլևս երբեք չհասավ այդ բարձունքին, և Օրբելյան իշխանների տոհմական դամբարան-եկեղեցին այդպես էլ մնաց անգերազանցելի:

Այստեղ ամեն ինչ արտասովոր է. և՛ արևմտյան ճակատի մուտքի երկու կողմերից պատի շարվածքից դուրս եկող աստիճանները, և՛ զարդանախշերը, և՛ մուտքերի ճակատակալ քարերը, և՛ մյուս ճակատների մշակումը, մի խոսքով՝ ամեն ինչ: Հուշարձանախմբի հյուսիսային մասից անջատ, աներկյուղ ցուցադրելով իր հպարտ ու պերճ ձևերը, կանգնել է Նորավանքի դամբարանը: Հենց այստեղ, դամբարանի մոտ նրա կախարդ արարչի գերեզմանն է...

**ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ**
**ճարտարապետ**

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




Հայոց տոմարի 12-րդ ամիսն է:

Ք. Պատկանյանի ստուգաբանությամբ՝ Հրոտից ամսանունն առաջացել է «հուր» բառից: Վանական Վարդապետը (1181—1257) նշում է, որ Հրոտից ամիսը իր բնությամբ համապատասխանում է իր անվանը, այսինքն՝ հուր բառին: Այդ ամսին, շարունակում է Վանական Վարդապետը, արեգակը հուր է թափում:

Հրոտիցը «հուր» բառից են բխեցնում նաև արդի տոմարագետները:

Հայոց տոմարն ուներ նաև 13-րդ ամիս, որը կոչվում էր «Հավելյաց»:

Ինչպես արդեն ասել ենք, հայկական ամիսներից ոչ յուրաքանչյուրը 30 օր ուներ, ուստի տարին դառնում էր 360 օր՝ 365—366-ի փոխարեն: Ուստի տարվա մընացած 5—6 օրերը դուրս էին մնում ամիսներից: Հավելյաց ամիսը բաղկացած էր 5 կամ 6 օրից: Նահանջ տարիներին այդ ամիսն ունենում էր 5, իսկ սովորական տարիներին՝ 6 օր:




Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Պլատոնը կերակրի աղը անվանում էր «աստվածների սիրելի նյութ», Հոմերոսը՝ «աստվածային»: Հռոմեական լեգեոնի զինվորներին վարձը վճարում էին աղով: Հայտնի է, որ մեր դարի դեռևս 30-ական թվականներին Ադիս Աբեբայի բանկերից մեկի սեյֆերում ոսկու կտորների կողքին պահվում էր Եթովպիայի ավանդական արժույթը՝ աղի սեղմված քառակողիկներ: Եվ եթե այսօր աղը չի գնահատվում ոսկուն հավասար, ապա դրա պատճառը հավանաբար այն է, որ երկրագնդի վրա նրա պաշարները ավելի են, քան թանկարժեք մետաղինը. միայն ցամաքի վրա նրա տարածությունը կազմում է 1,5 մլն խորանարդ կիլոմետր: Եվ բացի այդ, բժիշկները ավելի հաճախ են հիշեցնում, որ այդ «աստվածային նյութի» ավելորդ քանակի օգտագործումը վտանգավոր է առողջությանը:

Աղի որոշակի քանակ, իհարկե, պետք է մեր օրգանիզմին: Արյան մեջ պարունակվում է մոտ 0,6 տոկոս կերակրի աղ: Այն անհրաժեշտ է, որպեսզի օրգանիզմում պահպանվի բջիջների և հեղուկների օսմոտիկ հավասարակշռությունը: Ներվային բջիջները չէին կարող գործել առանց նատրիումի և քլորի իոնների: Քլորը հարկավոր է ստամոքսում աղաթթվի արտազատման համար: Սակայն այդ բոլորի համար բավարարում է աղի այն քանակը, որ մենք ստանում ենք մսի և կաթի մթերքների միջոցով: Այնուամենայնիվ, մարդու ախորժակը աղի նկատմամբ իրավացիորեն աննորմալ բնույթ է կրում և բավական գերազանցում է ֆիզիոլոգիական պահանջները:

Ավստրալացի հոգեբանները, հետևելով սրճարանի մոտ 2 հազար հաճախորդների, նշեցին, որ նրանց $^{1}/_{4}$-ը կերակրին աղ էին անում մինչև համտեսելը: Հետազոտողները այդ երևույթը համարում են «չմտածված» և համեմատում են նարկոտիկների հանդեպ տածած կրքի հետ:

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.










Երկու հեծանվորդ իրար հանդեպ դուրս են գալիս. մեկը՝ Ա կետից, մյուսը՝ Բ-ից, յուրաքանչյուրը՝ 15 կմ/ժ արագությամբ, Ա և Բ կետերի միջև եղած հեռավորությունը 300 կիլոմետր է: Առաջին հեծանվորդի գլխին (ճանապարհի սկզբին) մի ծիտիկ է նստում, որը թռչում է (20 կմ/ժ արագությամբ) դեպի երկրորդ հեծանվորդը ու հետ է վերադառնում և այսպես գնում գալիս է, մինչև հեծանվորդները հանդիպում են: Որքա՞ն ճանապարհ է անցնում այդ ընթացքում ծիտիկը:

Առաջարկը՝ ԱՐԱՄ ՈՒԳՈՒՋՅԱՆԻ








**«ՊԻՈՆԵՐ» № 11-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ:**





*Հանձնված է տպագրության 1. 10. 1984 թ.: Ստորագրված է տպագրության 6.12. 1984 թ.: ՎՖ 12760: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 63652: Պատ. 1990: Գինը՝ 15 կ.:*

***Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2:***

Сдано в набор 1.10.1984 г. Подписано к печати 6.12.84 г. Формат 70×100 1/16. ВФ 12760. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 63652. Заказ 1990. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806



ԱՅՍ ՏԱՐԻ ԼՐԱՑԱՎ ԳԵՂԱՆԿԱՐԻՉ ՍԵԴՐԱԿ ԱՌԱՔԵԼՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԸ:

«ԱՆԿՅՈՒՆ ԵՐԵՎԱՆՈՒՄ: ԱՇՈՒՆ» 1926 Թ.

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Ծ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագր.
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ